ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՅՈՑ

## ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ

## ՎԻՃԱԿԻՆ ՎՐԱՅ

معارف نظارت جليله سنك ٦٧٤ نومرولو رخصتنامه سيله
طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

1888

ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՅՈՑ

## ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ԿՐԹԱԿԱՆ

## ՎԻՃԱԿԻՆ ՎՐԱՅ






Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
1888

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Մեր ԵՐԿՈՒ ԽՕՍՔՆ, զոր այսօր կը հրատարակենք, մի հեղինակութիւն չ'է, այլ լոկ մի ստուերագիր այն սօսկալի հարուածին, զոր քանի մի տարի առաջ կըրեց Հայոց կրօնական եւ կրթական ազատութիւնն ի Ռուսաստան, եւ ամփոփումն այն ճշմարտութեանց, զորս մեզմէն առաջ շատերն շատ անգամ հռչակած են: Մենք նոր բան չ'ենք հրատակեր, այլ կ'արձարծենք միայն այն մեծ եւ սուրբ դատն, որ մեր կրօնական ինքնուրոյն գոյութեան դատն է եւ որոյ պաշտպանութիւնն ամեն ճշմարիտ Հայ զաւակի անպայման պարտաւորութիւնն:

Այս դատն խղճի ու կրօնի ազատութեան եւ բարոյական ու մտաւոր զարգացման դատն է, որ սուրբ է, նուիրական է, հոգեւոր է եւ ամեն մարդկային կամ քաղաքական օրէնքներէ առաջ՝ օրէնք է:

Հայք իրաւունք կը համարին իրենց, որ Ռուսիոյ կառավարութիւնն թողու Հայաստանեայց Ս. Եկեղեցին, իր Հայրապետութեամբ հանդերձ, այն անկախ վիճակին մէջ, յորում էր 1836 թուականէն առաջ, թողու եւ Հայոց Դպրոցներն այն իրաւասութեան ներքոյ եւ այն ուղղութեան մէջ, յորում էին յառաջ քան 1885 թուականն:

Այս իրաւունքն վայելած են Հայք ինչպէս Ռուսիոյ Տիրապետութենէն առաջ, նոյնպէս եւ Ռուսիոյ Տիրապետութեանն շրջանին մէջ, յառաջ քան վերջեալ թուականններն. Հայք այժմ եւս վարձ կամ պսակ չեն խնդրեր իրենց վկայեալ հաւատարմութեան համար,

# ԿՐՕՆԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ԱՌԱՔԵԼԱԿԱՆ Ս. ԵԿԵՂԵՑԻ ՀԱՅՈՑ

## Ի ՌՈՒՍԱՍՏԱՆ



Շատ անգամ գրած ենք Կրօնական Ազատութեան և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ վերայ։ Գրած ենք մեր եկեղեցական կոչումն ընդունելէն առաջ. գրած և խօսած ենք մեր եկեղեցական կոչման շրջանին մէջ։

1884 Թուականի 12 Մարտի Համագումար ժողովոյն մէջ արտայայտած ենք մեր համոզումն Հայաստանեայց Եկեղեցւոյ և Հայրապետութեան բարձր նշանակութեան մասին՝ հետեւեալ առենախօսութեամբ։

«Հա՛րք իմ և Եղբա՛րք.

«Մենք գումարուած ենք այսօր մի մեծ պարտք կատարելու համար։ Այս պարտքն է կաթողիկոսական ընտրելեաց ցանկ պատրաստել և մատուցանել զայն Ազգային Երեսփոխանական ժողո-

վոյն ։ Այս պարտուց կատարումն կը պարունակէ իւր մէջ՝ ամենամեծ պատասխանատուութիւն Աստուծոյ և Ազգին առջև ։

« Ծանրակշիռ է ժողովոյս վիճակն ։ Աղօթենք ուրեմն որ Հոգին Սուրբ օգնէ մեզ սուրբ սրտիւ և արթուն մտօք կատարելու մեր պարտքն ։ Այո՛, մենք Կաթողիկոս պիտի չ՚ընտրենք, որ Ազգի Ընդհանրութեան գործն է. բայց ընտրելեաց ցանկի պատրաստութիւնն եւս ինքնին մեծ պատասխանատուութիւն կ՚ենթադրէ. քանզի Ազգն մեր վրայ վստահելով՝ մեր ընտրածներէն պիտի ընտրէ Ընդհանուր Հայրապետն ։

« Գիտէ՞ք արդեօք, թէ ո՛րչափ մեծ պատիւ է մեզ Ազգին այն վստահութիւնն, և ո՛րչափ արթնութիւն պէտք է մեր կողմէն Ազգի վստահութիւնը պսակելու համար ։ Գիտէ՞ք արդեօք թէ ո՛րչափ կարող է բարձրանալ մեր պատիւն ընդհանրութեան առջև, եթէ մենք աչալրջութեամբ և արդարութեամբ գործենք, և ո՛րքան կարող է նուազիլ՝ եթէ շեղինք արդարութենէ ։

« Ո՞վ կայ մեր մէջ, որ չը փափաքի եկեղեցականաց պատւոյ բարձրանալուն ։ Բայց փափաքիլն բաւական չէ ։ Պիտի աշխատինք իրօք պսակել զայն ։ Պիտի աշխատինք, որ մեր քուէարկած մէն մի ընտրելին կրէ յանձի՛ն կաթողիկոսական կոչման էական պայմանները ։

« Էական պայմաններ ասացի, և անշո՛ւշտ առանց նպատակի չէ խօսքս ։

« Շատերն շատ բան խօսեցան, և գրեցին կաթողիկոսական արժանաւորութեան մասին. կը գովեմ իրենց եռանդն. քանզի ամեն բաղձանք նշան է, որ Ազգն անտարբեր չէ իւր Կաթողիկոսութեան մասին. Սակայն ես ընդունելով հանդերձ այլոց թուած Կաթողիկոսական յատկանիշներն, ուրիշ մի առաւել կարեւոր կէտի վրայ պիտի հրաւիրեմ Պատկառելի Ժողովոյդ ուշադրութիւնն, և այս մասին ի՛նչ որ պիտի խօսիմ, բոլոր սրտէս պիտի խօսիմ. ես ճարտասան չեմ՝ բայց խօսք մը չեմ արտասաներ՝ որ իմ սրտէս բղխած չը լինի. և կը հաւատամ որ դուք եւս այնպէս պիտի ընդունիք ։

« Մենք այսօր մի բացառիկ կացութեան մէջ ենք, Հա՛րք իմ և Եղբարք ։ Մեր եկեղեցականութիւնն այն բարձրութեան վերայ չէ, որուն համար սահմանուած է ։ Անիշխանութիւնն տիրած է

գրեթէ ամենուրեք ։ Մենք եկեղեցականքս , որ Եկեղեցւոյ շինուածի քարերն ենք , գոգցես խախտուած ենք մեր տեղէն . և գիտէք անշուշտ՝ որ ամեն քար երբ իւր տեղէն ընկած է , կարող է դառնալ քար գայթակղութեան ։ Նոյն իսկ մեր ժողովուրդը՝ որ մեր Առաքելական Եկեղեցւոյն շինուածին նուիրական և մածուցիկ շաղախն է , մեր ժողովուրդն ևս Քրիստոնէական կրօնի նկատմամբ նախանձելի գրութեան մէջ չէ ։

« Պարզ ասեմ, Հա՛րք իմ և Եղբարք , ո՛չ մեր կաթողիկոսները՝ Սահակներ են , ո՛չ մեր Արքեպիսկոպոսներն ու Եպիսկոպոսները՝ Յովսէփներ են , ո՛չ մեր Վարդապետներն՝ Մեսրոպներ , ո՛չ մեր Քահանայքն՝ Ղեւոնդներ , և ո՛չ մեր ժողովուրդն՝ Վարդանանց դարու սքանչելի ժողովուրդն ։

« Ո՞վ է պատճառն այս անկման . եկեղեցակա՞նք թէ ժողովրդականք . — ո՛չ մին և ո՛չ միւսն առանձինն , այլ երկուքեան միանգամայն ։ Քանզի եկեղեցական և ժողովուրդ՝ մի Եկեղեցի կը կազմեն · և եկեղեցականութիւնն ո՛չ այլ ինչ է , եթէ ո՛չ ժողովրդէն ընտրուած մի պաշտօնէութիւն ։ Չ'կայ եկեղեցականութիւն առանց ժողովրդեան , ինչպէս որ չ'կայ Եկեղեցի կամ ժողովուրդ՝ առանց եկեղեցականութեան ։ Այս է Հայաստանեայց Եկեղեցւոյ առաքելական պաշտելի տիպն ։ Այս է Քրիստոնէութեան ճշմարիտ ոգին ։ Հետեւապէս , թէ՛ եկեղեցականք և թէ՛ ժողովրդականք շատ կը սխալին , երբ իրարու կը վերագրեն այն թերութիւններն , որք երկոցունց միանգամայն կը վերաբերին , և զորս կարելի է ուղղել միաձայն խոստովանութեամբ և աշխատութեամբ ։

« Շատ կը սխալինք նմանապէս , եթէ ասենք՝ թէ ներկայ դարը՝ հալածանաց դար չէ , և ուրեմն Յովսէփներու , Ղեւոնդներու և Վարդանանց նահատակներու պէտք չ'կայ ։

« Քրիստոնէութիւնն նահատակութեան կրօնք է , Հա՛րք իմ և Եղբա՛րք ։ Քրիստոնէութիւնն արթնութեան կրօնք է ։ Եթէ չը կայ արտաքին թշնամի , անշո՛ւշտ կայ ներքին թշնամի , որ աւելի վտանգաւոր է քան զառաջինն ։

« Ի՞նչ էր հեթանոսական դարերու հալածանաց նպատակն , եթէ ո՛չ խլել մեր սիրտն մեր Արարչէն, մեր կրօնքէն, մեր Եկեղեցիէն ։ Երբ կրօնական անտարբերութիւնն օր աւուր կը տիրէ ներկայ սերնդին վերայ . երբ ստութիւնն , օտարամոլութիւնն , խա-

բէութիւնն օր աւուր կ'արատաւորեն մեր քրիստոնէական անբծութիւնն. երբ արտաքին և ներքին Աստուածպաշտութիւն, լաւ է ասել սիրտ և ծէս իրարու համապատասխան չեն. վերջապէս երբ 'ի Ռուսիա մեր կրօնական ազատութիւնն կը բռնաբարուի, որ արիւնով և արտասուքով գնուած է, և Հայու համար միշտ ամեն ազատութիւններէն գերագոյնն համարուած է. միթէ այս ամենն ներքին հալածանք չե՞ն, և ո՞ւր է մեր հոգեւոր ազատագինութիւնն այս ամեն չարեաց դէմ։ Ո՞ւր են մեր հոգեւոր զէնքերն — Հաւատոյ վահանն, Յուսոյ զրահն և Սիրոյ ասպարն։ Միթէ բաւակա՞ն են միայն եկեղեցական հագուստ ու տարազն։ Ո՞ւր է մեր կենդանի զինուորութիւնն. միթէ մենք այն Մեծ Զօրագլխին զինուորներն չե՞նք, որ յառաջելով 'ի խաչ, յառաջելով 'ի զոհ անձին, խրախոյս կարդաց մեզ ասելով. «Քաջալերեցարո՛ւք, զի ես յաղթեցի աշխարհի»։ Ո՞ւր է մեր պատերազմն խաւարի դէմ, ստութեան դէմ, անտարբերութեան դէմ, նիւթապաշտութեան դէմ, մոլութեան դէմ, մոլորութեան դէմ։ Ո՞ւր է մեր արթնութիւնն. ո՞ւր է մեր քաջութիւնն։ Միթէ մեր խորհրդածութեան գլխաւոր նիւթն պիտի չը լինի՞ն այս ամենն, մանաւանդ ներկայ պահուս մէջ։

«Կը տեսնէք ահա՛, թէ ո՞ր տեսակէտէն նայելու ենք կաթողիկոսական ընտրելեաց արժանեաց վրայ։ Կը տեսնէք՝ թէ ի՞նչ ոգի պիտի ոգեւորէ զմեզ՝ մեր Եկեղեցւոյ և եկեղեցականաց վիճակին բարձրացնելու համար։

«Մենք պիտի հաւատանք, Հա՛յք իմ և Եղբա՛յք, որ մեր Եկեղեցին՝ մեր ազգային միութեան յօդակապն է։ Պիտի հաւատանք՝ որ մեր Եկեղեցին մեր հոգեւոր հայրենիքն է, չ'ասեմ աւելի։ Պիտի հաւատանք որ Եկեղեցին՝ այն փրկարար տապանն է, որով պահպանուած է մեր Ազգի գոյութիւնն պատմական աշխարհասասան հեղեղներուն ժամանակ, և կարող է պահպանուիլ այժըմ և յաւիտեան։ Պիտի հաւատանք որ մեր Եկեղեցին մեր ըղձից կեդրոնն է, և ահա՛ այս հաւատով և այս համոզմամբ պարտինք ձեռնարկել ընտրութեան։

«Ուրեմն, ա՛յն անձն, որ կարող է ամրացնել այս յօդակապն և պայծառացնել այն հայրենիքն. ա՛յն անձն՝ որ կարող է իւր սիրով, իւր անձնուիրութեամբ, իւր արթնութեամբ կեդրոնա-

ցընել մեր ցիրուցան Ազգի սիրտն ու միտքն այս կեդրոնին մէջ · ա՛յն անձն՝ որ իւր լուսով, իւր կեանքի օրինակով կարող է առաջնորդել եկեղեցականին և ժողովրդականին, կարող է զօրացընել այն հոգևոր միութիւնն, որ կը կոչուի Եկեղեցի. ա՛յն անձն՝ որ վառուած է այն հոգւով և պատրաստ է նկատել զինքն ո՛չ միայն Հայրապետ՝ Հայրապետական Աթոռոյն վերայ, այլ մանաւանդ զոհ ազգային սիրոյ սեղանին վրայ. ա՛յն անձն է ահա՛ Աստուածմէ կոչուածն: Նա է ճշմարիտ ընտրելին: Նա է արժանին Ազգի ձայնին:

« Այս հոգին պիտի առաջնորդէ մեզ ահա՛ մեր ընտրութեան մէջ: Աստուծոյ օրինաց պահպանութեան սէրն և մեր Եկեղեցւոյ պայծառութեան նախանձախնդրութիւնն պէտք է ուղեցոյց լինին մեր խորհրդոց և գործոց:

« Արդ՝ կ'աղաչեմ զձեզ, Հա՛րք իմ եւ Եղբա՛րք, կ'աղերսեմ թախանձագին, որ խորհիք, լա՛ւ խորհիք թէ՝ ի՛նչ մեծ պատասխանատուութիւն կայ ներկայ Համագումար Ժողովոյս վրայ՝ Աստուծոյ առջեւ, Ազգին առջեւ, Պատմութեան առջեւ: Այսօր մեր Եկեղեցւոյ համօրէն զաւակները, մեր բովանդակ Ազգն՝ ակնապիշ կը սպասեն Ժողովոյս արդեանց: Վկայ է այս բանին մեզ շրջապատող հազարաւոր բազմութիւնն, որոյ երեւոյթն իսկ և հետաքրքրութիւնն մեծ մխիթարութիւն է մեզ, որով կ'երեւի թէ՝ ժողովուրդն անտարբեր չէ մեր ընտրութեան. Ամեն սրտեր կը բաբախին, ամեն մտքեր կը յուզին, ամեն կուրծք կը տրոփէ, ամեն Հայ կ'ակնկալէ: Կը կրկնեմ. ի՛նչ որ սկզբան խօսեցայ. արդարեւ մենք Հայրապետ պիտի չ'ընտրենք, բայց մեր կազմած ընտրելեաց ցանկն մեծ կարեւորութիւն ունի բուն Հայրապետի ընտրութեան նկատմամբ:

Մենք Եկեղեցւոյ պաշտօնեայ ենք. մենք օրինաց և կանոնաց աւանդապահ ենք. մենք ճշմարտութեան համար որոշուած վըկաներ ենք. մենք Աստուծոյ թագաւորութիւնը յառաջացնելու համար՝ ընտրուած զինուորներ ենք. մենք լուսոյ սպասաւորներ ենք: Եւ ահա՛ այսօր կոչուած ենք Ազգին ցոյց տալու, որ մենք կը ճանաչենք մեր կոչումն, կը գնահատենք մեր պարտաւորութիւնն և կը պատուենք Ազգի վստահութիւնն:

« Ուրեմն, Աստուծոյ Հոգին ունենանք մեզ առաջնորդ, և մեր Եկեղեցւոյ ընդհանուր շահն՝ կէտ նպատակի: Այո՛, մենք հող

ենք և մոխիր Աստուծոյ առջեւ , բայց պէտք է իմանանք, որ Աստուած շատ անգամ հողէն իսկ կաւ կը կազմէ կոյրերու աչքը լուսաւորելու համար ։ Վստահի՛նք Աստուծոյ ամենակարողութեանն , ապաւինի՛նք նորա իմաստութեանն որ ուղղէ և յաջողէ մեր ձեռաց գործն ։ Ամփոփուի՛նք մեր խղճի ազատութեան խորանին մէջ, ամփոփուի՛նք մեր սրտի խորութեան մէջ, հաւատալով որ կը փառաւորուի Աստուած , նշանաբան ունենալով մեզ այս սուրբ խօսքն . « Մատիցէ՛ այր 'ի խորութիւն սրտի իւրոյ և բարձր եղիցի Աստուած » ։

Իսկ այս Համագումարի թուականէն 17 տարի առաջ՝ ուսուցչութեանս ժամանակ երկասիրած և վարդապետական կոչմանս մէջ հրատարակուած Եկեղեցական Պատմութեանս վերջին տողերն այս խօսքերով կնքած եմ· « Մենք կը հաւատանք և կը խոստովանինք որ ճշմարիտ իրաւունքն մահ չ'ունի , և հայկական ներկայ սերունդն կարող չէ անտարբեր աչօք նայիլ իւր բազմադարեան և բազմաչարչար Մօր վիճակին վրայ . յուսով եմք , որ մեր Եկեղեցւոյ իրաւանց պաշտպանութիւնն , յարատեւութիւնն և քրիստոնէական բազմարդիւն պայծառութիւնն պիտի մնայ իբրեւ առաջին նուիրական պարտք թէ՛ ներկայ և թէ՛ ապագայ սերնդին համար , և ո՛ր Կաթողիկոսն որ աջակցի այս մեծ գործոյ արդիւնաւորութեանն՝ դարուց ի դարս օրհնութեամբ պիտի յիշուի իւր անունն ու յիշատակն » ։

Այս տողերն գրած և դասախօսած ժամանակ երբէք չէր անցներ մտքէս՝ թէ մի օր ես ո՛չ միայն վարդապետական կոչումն պիտի ընդունիմ, այլ և կաթողիկոսական ընտրելեաց ցանկն պետի անցնիմ, այլ և Ս. Էջմիածնի Համազգային Ընտրողական Ժողովոյ միահամուռ ձայնիւ պիտի արժանանամ կաթողիկոսա-

կան կոչման, և ո՛չ միայն Հայոց Եկեղեցւոյ զաւակներէն, այլ և օտարներէն շնորհաւորական հեռագրեր և գրեր պիտի ընդունիմ սոյն կաթողիկոսական ընտրութեան համար։

Անակնկալ դէպքերն խոր տպաւորութիւն կ՚ազդեն։ Այս տպաւորութեան ներքոյ էի և ես, երբ ի հեռուստ և ի մօտուստ սրտայոյզ բաղձանքներ և խորհուրդներ կը հաղորդուէին ինձ։

Հայութիւնն իւր սիրտն կը բանար իմ առջեւ։ Կը զմայլէի, որ Հայութիւնն կենդանի սիրտ ունի, բաղձանքներ ունի. բայց միանգամայն տկարութիւնս զգալով՝ կը շուարէի, կը տատամսէի, կը յուզուէի և ուրախական ժպիտներս խառն էին արտասուաց կաթիլներով։ Մի կողմէն կը մտաբերէի հրաժարիլ և խոյս տալ այս մեծ կոչումէն. միւս կողմէն կը յիշէի 16 տարի առաջ հրատարակած իղձերս ու յոյսերս և կը խորհէի թէ՝ գուցէ Նախախնամութիւնն կամի իմ գըրածներս կաթողիկոսութեան մասին իմ ձեռքովս իրագործել։

Չը մոռնամ ասել, որ սոյն մտախոհութեանս մէջ անընդհատ կը հասնէին զգայուն և խոհուն անձանց գրեր, որոնք կ՚երդուեցնէին զիս անսալ Ազգի միահամուռ ձայնին և չը հրաժարիլ։ Մին կը գրէր. «Չը լինի թէ հրաժարիք այս վեհ աստիճանէն, ո՛ն անդր, բոլոր Հայերիս շլինքն (վիզն) կը կտրէք։» Միւսն կը գրէր. «Չը հրաժարիք, Սրբազա՛ն, Աստուծոյ զօրութիւնն և Նորա աջն ձեր վերայ է միշտ»։ Երրորդն կը գրէր. «Մի՛ գուցէ մերժէք Ազգի ընտրութիւնն. մի՛ արասցէ Տէր, մեծ հարուած տուած կը լինիք Ս. Աթոռին։» Թողունք ասել, որ շատերն

մինչեւ անգամ խորհրդածութեան յատակագծեր կը հաղորդէին ինձ դժուարութիւններ հարթելու եւ գործունէութեան ճանապարհն յարդարելու համար։

Այսպիսի խրախոյսներ ու յոյզեր եւ շատ բաղձանքներ ու ակնկալութիւններ կը քաջալերէին զիս, կ'ոգեւորէին զիս, եւ ես տեսնելով Ազգի կամքն ու սիրտն ինձ հետ՝ կը խոնարհէի հպատակիլ այս կամքին եւ հրաժարման խնդիր չը յարուցանել։

1885 Թուականի Ապրիլ 21էն ի վեր, որ Սուրբ Էջմիածնի Համազգային Ժողովոյ ընտրութեան օրն էր, ամիսներ անցած էին։ Ազգն կ'սպասէր. իսկ ես մենաւոր լռութեան մէջ կ'աղօթէի եւ ծրագրեր կը պատրաստէի առաջիկայ ասպարիզին համար՝ թէ ի՞նչպէս պէտք է սկսիլ եւ ի՞նչպէս պէտք է շարունակել, որ պսակուի Ազգի կամքն, պսակուին Ազգի բաղձանքներն ու ակնկալութիւններն։

Յանկարծ հեռագիրն յայտնեց թէ Օգոստոսի 23ին, Ռուսիոյ Կայսրն կաթուղիկոս անուանած է զՄակար Արքեպիսկոպոսն՝ Առաջնորդն Նախիջեւանի եւ Բեսարաբիոյ։ Այս լուրն իսկոյն տարածուեցաւ ամեն տեղ։ Սկսան խօսիլ եւ գրել կաթողիկոսական խնդրոյն սոյն տարօրինակ դարձուածին վերայ։ Իսկ ես խոհեմութիւն համարեցի լռել, որպէս զի խնդիրն անձնականութեան չը վերածուի, այլ յուզուի, քննուի եւ կարգադրուի իւր ընդհանրական սահմանին մէջ. քանզի այլ եւս լոկ Կաթողիկոսական ընտրութեան խնդիր չէր, այլ Եկեղեցւոյ իրաւանց խնդիր, Եկեղեցւոյ եւ Կրօնի ազատութեան խնդիր։

Ազգն կը յուսար անշո՛ւշտ՝ թէ այսպիսի մի մեծ

և բարձր խնդրոյ համար մեծ միջոցներ պէտք է ձեռք առնուին։ Ազգն, մանաւանդ Ռուսաստանեայք, կը յուսային թէ Պօլսոյ Ս. Պատրիարքն Տ. Յարութիւն Վեհապետեան, կրօնական ազատութեան այս մայրաքաղաքին մէջ, Հայոց Եկեղեցւոյ ազատութեան խնդիրն՝ Երեսփոխանական Ժողովոյ սահմանէն աւելի բարձր խնգիր նկատելով՝ պիտի հրաւէր կարդայ Հայութեան, պիտի իւր շուրջն բոլորէ հմուտ եկեղեցականներ և աշխարհականներ, և ինչպէս երբեմն Սուրբըն Յովսէփ, ի Թագաւորանիստն Արտաշատ, եպիսկոպոսօք, քորեպիսկոպոսօք, պատուական երիցամբք և հանդերձ սուրբ ուխտիւն Եկեղեցւոյ և հաւանութեամբ մեծամեծ նախարարացն և ամենայն բազմութեամբ աշխարհին, պատասխանեց Յազկերտին, ինքն ևս Պատրիարքն օրինական ճանապարհաւ պիտի պատասխանէ Ռուսիոյ Կառավարութեան և պիտի պաշտպանէ Եկեղեցւոյ ազատութիւնն։ Քանզի խնդիրն ներկային մէջ ևս նոյն էր, ի՛նչ որ էր հինգերորդ դարուն մէջ, այն է՝ զԱզատութիւն Եկեղեցւոյ արկանել ընդ ծառայութեամբ:

Ազգն կսպասէր՝ թէ Սրբազան Պատրիարքն Եկեղեցւոյ ազատութեան ոգւով ոգևորուած՝ պիտի ոգևորէր նաև ամենէն սառնասիրտներն ու անտարբերներն. բայց, աւա՛ղ, երևի թէ չիմացաւ նա թէ ի՞նչ է Եկեղեցւոյ Ազատութիւնն. քանզի գործիք եղաւ, քան թէ տէր իւր կոչման և պաշտօնին։ Զիջաւ Ժողովրդի տեսութենէն թագուցանել իւր կրօնական Ազատութեան խնդիրն. զիջաւ ոստիկաններով շրջապատել տալ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ Եկեղե-

ցին (1), ուր գումարուած էր Երեսփոխանութիւնն․ զիջաւ Տաճարի պարսպաց դռներն անգամ փակել ժովըրդեան առջեւ․ և այսպէս ժողովրդի աչքէն անթափանց և սրտէն հեռի ժողովոյ մէջ՝ քառասնից ձայնիւ որոշեց, հակառակ Հայաստանեայց Եկեղեցւոյ դարաւոր իրաւանց, օտարոտի եղանակաւ ընդունիլ Մակարի օտարոտի ընտրութիւնն, և սոյն որոշումն ցնծութեամբ հեռագրել առ Մակար, որ արդէն կանխաւ իսկ ապահովուած էր։

Տարակոյս չկայ, որ քառասնից սոյն դռնփակ որոշմամբ խնդիրն փակուած չէ Հայոց Եկեղեցւոյ զաւակներուն համար։ Տարակոյս չկայ, որ Կրօնական Ազատութեան խնդիրն՝ Ազգային կենաց և գոյութեան խնդիր է Հայուն համար, և այնպէս իսկ միշտ պիտի մնայ, քանի որ Հայ կայ աշխարհի վերայ։ Բայց տարակոյս չը կայ նմանապէս, որ իբր սեաւ բիծեր պիտի մնան Հայոց Եկեղեցւոյ Պատմութեան մէջ հետեւեալ երեք կէտերն։ — Ա. Մակարի կաթողիկոսական կոչումն ընդունիլն Ռուսիոյ Ցարէն՝ հակառակ իւր եկեղեցական ուխտին եւ ընդդէմ Հա-

---

[1] Ոստիկանութեան Պետն ժողովէն զկնի միայն իմացած է, թէ խաբուած է ինքն․ քանզի իրմէն կարգապահութեան համար միայն զինուորներ խնդրած են․ բայց ուրիշ նպատակի ծառայեցուցած են զինուորներն, այսինքն արգելուն ժողովուրդն որ ժողովատեղին չխուժէ և Մակարի օտարոտի ընտրութեան դէմ աղաղակներ չը բառնայ։ Խեղճ ոստիկաններն մինչեւ անգամ քանի մի ազնիւ երիտասարդներ բանտ տարած են չ՚իմանալով որ իրենց Եկեղեցւոյ իրաւանց պաշտպանութեան համար կուզէն Ս. Լուսաւորչի գաւիթն մտնել և ո՛չ թէ կարգապահութիւն խանգարելու։

յոց Եկեղեցւոյ ընտրական իրաւանց և օրինաց։ — Բ. Յարութիւն Սրբազան Պատրիարքի լռութիւնն այն հրապարակական հարցման դէմ, զոր կ՚ուղղէր առ նա ծերունազարդ Երեսփոխանն Քրիստոստուր թէ՝ Ս. Պատրիարքի խիղճն, հաւատարմութեան ուխտն և Հայոց Եկեղեցւոյ օրէնքն կը ներե՞ն իրեն՝ ճանաչել Մակարի կաթողիկոսութիւնն։ — Գ. Քառասուն Երեսփոխանաց վարանումն, որոնք Ազգին Ընտրելոյն կաթողիկոսութիւնն Երեսփոխանական Ժողովոյ մէջ հրապարակաւ հռչակելէն և շնորհաւորելէն զկնի՝ չ՚արիացան մերժել Մակարի օտարոտի ընտրութիւնն որոյ անունն անգամ իրենց ընտրելեաց եռանուն ցանկին մէջ մտած չէր։

Թո՛ղ փաստաբանեն որոնք որ կամին․ թող բացառիկ պարագայից ծնունդ՝ բացառիկ կաթողիկոսութիւն անուանեն Մակարի կաթողիկոսութիւնն։ Թո՛ղ լուան իրենց ձեռքերն՝ որչափ և կամին՝ անմեղ հռչակուելու համար․ ո՛չ իրենց խիղճերն կը մաքրուին, և ո՛չ իրենց ձեռքերն, որով մեղանչեցին իրենց Եկեղեցւոյ Ազատութեան դէմ, որ գին է արեան Գողգոթայի Նահատակին, գին է արեան հազարաւոր նահատակաց և մարտիրոսաց։

Բայց մենք Պատմութեան թողո՛ւնք այս տխուր անցից տխուր և դառն յիշատակն, և վերստին դառնանք էական խնդրոյն, որ է Կրօնական Ազատութիւնն, Եկեղեցւոյ ազատութիւնն։

1800 տարիէն աւելի է, որ Հայաստանեայց Ս. Եկեղեցին գոյութիւն ունի աշխարհիս վրայ։ 1800 տարիէն աւելի է, որ կը դիմամարտի Կրօնի ազատու-

*Քրիստոնէութիւնն* օրէնք է կատարեալ ազատութեան (Յակ. Ա. 25). *իսկ քրիստոնէական Եկեղեցին է մի հաստատութիւն՝ հիմնուած այս ազատութեան վերայ։ Հետեւաբար կրօնական ազատութիւնն է կեանք Քրիստոնէական Կրօնի և Եկեղեցւոյ։ Մի Հայ գրագէտ ասած է. « Արտաքոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ չիք Հայութիւն* [1] *». իսկ մենք կը յաւելունք թէ՝ բայց առանց կրօնական ազատութեան և ս չի՛ք Եկեղեցի։ Եկեղեցւոյ ազատութիւնն չը նմանիր բնա՛ւ քաղաքական ազատութեան։ Եկեղեցւոյ ազատութիւնն այն կենդանարար զօրութիւնն է, որով մարդոյ հոգին կը հրճուի անայլայլելի ցնծութեամբ, միտքն կը պարարի անմոլար ճշմարտութեամբ և սիրտըն կը ցօղանայ սրբութեան և շնորհաց զմայլելի ցօղմունքներով։ Եկեղեցւոյ սոյն սքանչելի ազատութիւնըն էր, զոր կը փառաւորէին, զոր կը հռչակէին մեր Նախնիք, Ցազկերտի հալածանաց դարուն մէջ, աղաղակելով. « Եկեղեցիք ո՛չ են պարգեւք թագաւորաց, և ո՛չ արուեստ ճարտարութեանց, և ո՛չ գիւտք իմաստնոց, և ո՛չ աւար քաջութեան զինուորաց.... այլ շնորհք են մեծին Աստուծոյ, ո՛չ միում ումեք ի մարդկանէ տուեալ, այլ ամենայն բանաւոր ազգաց, որք վիճակեալք են ի բնակութիւն ի ներքոյ արեգականս »։* (ԵՂԻՇԷ Բ. ՑԵՂ.)

*Կրօնական ազատութիւնն, ինչպէս կը սահմանեն նշանաւոր հեղինակներ, կրկին է — ներքին կամ անհատական, որ կը կոչուի* խղճի ազատութիւն, *ո-*

---

[1] Յառաջ. Պատմ. Բուն Միութեան Հայոց Լեհաստանի ընդ Եկեղեցւոյն Հռոմայ. Ս. Պետր. 1884.

*րով իւրաքանչիւր ոք իւր ազատութեամբ կապուած է Աստուծոյ հետ. և արտաքին ազատութիւն, որ կը կոչուի* ազատութիւն պաշտամանց, *որով շատ մարդիկ կամ մի ժողովուրդ, մի ազգ իւր յատուկ հանդէսներով, նշաններով, ժամանակներով, տեղով. խօսքով, ծէսով կը կատարէ իւր Աստուածպաշտութիւնն։ Եթէ մարդն միայն լինէր, իւր պաշտամունքն շատ պարզ կը լինէր. բայց երբ մարդ իւր նմանեաց հետ կը միանայ, պաշտաման ձեւերն ևս կը շատնան։ Մարդն իւր ընտանեաց վերայ ներգործութիւն ունենալու համար աւելի ձեւերու կը կարօտի քան թէ լոկ իւր անձին վրայ։ Արտաքին ձեւերն կը բազմանան և ծէսերն աւելի հանդիսաւոր կը լինին, երբ պաշտամունքն մեծ բազմութիւն կը համախմբէ։ Այս ձեւերն կը լինին տեսանելի կապ մի հասարակութեան, մի ազգի։ Նոքա կը միանան կրօնի վարդապետութեան հետ, և սոյն վարդապետութեան հետ հաւատոյ ծիսական մասն կը կազմեն։ Նոքա զգալի կերպիւ կրօնքն կը ներկայացնեն տգէտներուն անգամ. և ահա այս արտաքին պաշտամունքն իսկ թանկագին դառնալով ժողովրդեան համար, ինչպէս վարդապետութիւններն, կը պահանջէ կրօնական ազատութիւն։ Եթէ խղճի ազատութիւնն անհատի իրաւունքն է, անշուշտ պաշտաման ազատութիւնն եւս իրաւունք է հասարակութեանց, իրաւունք է ժողովրդոց։ Այս իրաւունքով նոքա անկախաբար կը կատարեն իրենց կրօնական արարողութիւններն. և այս արարողութեամբք կը պահպանեն իրենց հաւատն և հասարակաց ջերմեռանդութիւնն։ Անշո՛ւշտ մեր խօսքն բուն պաշտամանց*

վրայ է, որոնք կրօնի անբաժան մասն կը կազմեն, ինչպէս որ խօսքն կամ բանն մասն է մտածութեան. քանզի ինչպէս որ մտածութիւնն կը յայտնուի խօսքով, նոյնպէս կրօնքն եւս կը յայտնուի պաշտամունքներով։ Խղճի և պաշտամանց ազատութիւնն անբաժան են իրարմէ. անհնար է մին ընդունիլ և միւսն զլանալ, քանզի ճիշդ այնպէս կը լինի, եթէ մտածութեան ազատութիւնն ընդունուի և խօսելու ազատութիւնն զլացուի։

Հետեւապէս մի և նոյն են խղճի և պաշտամանց ազատութիւնն, և սոյն միութիւնն է ահա՛, որ կանուանի Կրօնական Ազատութիւն որ է ազատօրէն խոստովանիլ իւր Հաւատոյ դաւանութիւնն և ազատօրէն կատարել իւր պաշտամունքն։ Այս ազատութիւն ամէն անհատի և հասարակութեան իրաւունքն է. իսկ այս ազատութիւնն պաշտպանելն ամեն Տէրութեան պարտաւորութիւնն։ Գիտենք արդէն, որ քրիստոնէական հասարակութիւններն կամ ազգերն մեծ մասամբ կը տարբերին իրարմէ դաւանութեան և պաշտամանց նկատմամբ. ինչպէս որ կրօնական ազատութեան դէմ է եթէ մի հասարակութիւն միւսի պաշտամանց բռնանայ, նոյնպէս դէմ է եթէ ո՛ր և է իշխող Տէրութիւն այդպիսի բռնաբարութիւն գործդնէ։

Քրիստոնէութիւնն բոլորովին հակառակ լինելով կռապաշտութեան, հեթանոսական դարուց կրօնական ազատութեան թշնամիքն կը ջանային ամբողջ քրիստոնէական կրօնքն բառնալ՝ քրիստոնեայներն ջնջելով. մինչեւ անգամ մի Հռովմայեցի կայսր կը

փափագէր որ բոլոր քրիստոնեայքն մի գլուխ ունենային, որ կտրէր և ազատուէր։ Բայց քրիստոնէական կրօնի ազատութեան քրիստոնեայ Թշնամիքն ուրիշ եղանակ ունին. Նոքա ջանահնար եղած են և կը լինին տարբեր հասարակութեանց, տարբեր ազգութեանց յատուկ պաշտամունքներն վերցնել և իրենց ունեցածին հետ համաձուլել։ Հեթանոսութեան մէջ արտաքին հալածանք կար, սուր կար, տանջանարան կար, մահ կար, և քրիստոնէից կողմէն նահատակութիւն կար, մարտիրոսութիւն կար, որով և ոգեւորութիւն կար, ջերմեռանդութիւն կար, կենդանութիւն կար։ Իսկ քրիստոնէութեան շրջանին մէջ՝ քաղաքականութիւն կայ, հոգիներու տիրապետութեան տենչ կայ, պաշտամունքներ բառնալու մեքենայութիւններ կան, որսալու հնարներ կան, խնամակալելու խոստումներ կան, որով և միւս կողմէն Թուլութիւններ կան, պատրանքներ կան, անտարբերութիւններ կան, սեպհական Ազգային Եկեղեցւոյ պաշտամանց արհամարհանքներ կան, անդունդ կայ, կորուստ կայ, ազգութեան մահ կայ։ Հեթանոսութեան դարուց մէջ և ո՛չ մի քրիստոնեայ հասարակութիւն ջնջուած է կամ կորուսած իւր էութիւնն. բայց քրիստոնէական դարուց մէջ՝ խիստ շատ։ Արտաքին և ներքին հալածանքներն պէտք է իրարմէ զատեն մանաւանդ ա՛յն քրիստոնեայ հասարակութիւններն կամ ազգերն, որոնք ուրիշ ազգի իշխանութեան ներքոյ կը գտնուին։ Նոքա պէտք է իմանան, որ եթէ հեթանոսական դարուց մէջ կորուսած չեն իրենց էութիւնն, շատ դիւրութեամբ կը կորուսանեն քրիստոնէական դարուց

մէջ, եթէ կորուսանեն իրենց կրօնական ազատու-
թիւնն ու անկախութիւնն։

Հետեւապէս քրիստոնէական ազատ կրօնի ազատ պահանջն է, որ տարբեր հասարակութիւնք երբէ՛ք չբռնանան իրարու կրօնական ազատութեան վերայ ո՛ր և իցէ պատրուակաւ կամ միջոցաւ։ Այսպէս եւս ո՛չ քաղաքականութիւնն պէտք միջամտէ եկեղեցական պաշտօնէութեան գործերուն, և ո՛չ եկեղեցական պաշտօնէութիւնն պէտք խառնուի քաղաքական գործերու։ Նոքա կարող են փոխադարձաբար իրարու օգնել, բայց ո՛չ երբեք իրարու գործերուն խառնուիլ։ Քրիստոնէական կրօնի հիմնադիրն Յիսուս խոյս տուաւ յանապատ, երբ կամեցան զինքն թագաւոր կացուցանել։

Այսպէս ահա՛ ուղեցոյց ունենալով մեզ կրօնական ազատութեան ճշմարիտ սկզբունքն, և առաջի աչաց պատկերացնելով մեր Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ 18 դարեան Պատմութիւնն՝ կը տեսնենք յայտնապէս, որ մեր Եկեղեցին լիովին վայելած է կրօնական ազատութիւն մինչեւ 1836 թուականն։ Ամեն զոհողութիւն գործ դրած է ամեն քաղաքական միջամտութիւն մերժելու, և ինքն եւս իւր երկնաւոր Հիմնադրին հետեւելով՝ միշտ հեռացած է քաղաքականութեան խառնուելէ։ Կարող եմք ի լուր աշխարհի համարձակ ասել, թէ Հայաստանեայց Եկեղեցին ա՛յն ճշմարիտ Առաքելական Եկեղեցին է, որ միշտ խղճի ազատութեան, կրօնական ազատութեան տիպարն եղած է։ Ամեն հալածանք կրած է այս ազատութիւնն պահպանելու համար. բայց երբէ՛ք զիջած չէ իւր

*Փեսայի մատանիէն զատ ուրիշ մատանի անցնել իւր մատն. իւր Փեսայի փչեայ պսակն փառք համարած է իրեն, և երբէ՛ք հետամտած չէ՛ քաղաքական Թագի. Նոյնպէս բնա՛ւ երբէ՛ք խարոյկ վառած չէ՛ ուրիշի կրօնական ազատութեան դէմ։*

1836 *Թուականէն Ռուսիոյ քաղաքականութիւնն Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ մտած է, իւր քաղաքական նպատակին համար* կարգադրած օրէնքով։ *Նա մտադրած է 18 գարեան մի քրիստոնեայ ճշմարիտ Եկեղեցւոյ հիմունքն խախտել։ Հայոց Հայրապետական Աթոռն Ռուսիոյ տիրած հայկական հողին վերայ գտնուելով՝ Ռուսիա ինքն իրեն իրաւունք համարած է Հայոց Հայրապետութեանն տիրելով՝ Հայոց Եկեղեցւոյն տիրել։ Սկզբի օրէն մինչ ցարդ Հայք բողոքած են Ռուս Կառավարութեան այս տիրապետական խնամակալութեան դէմ. բայց նա բնաւ կարեւորութիւն տուած չէ՛։ Ռուս Կառավարութիւնն միտքն դրած է ջնջել այդ ինքնուրոյն Եկեղեցին, այդ ճշմարիտ Եկեղեցին, քաղաքական օրէնքներ դընելով՝ նորա յաւիտենական օրէնքներուն տեղ։ Հայք լոկ բողոքած են. իսկ Ռուս քաղաքականութիւնն իրօք իր նպատակին դիմած է։ Կրօնական ազատութեան մեծ ախոյեանն Ներսէս Ե. Աշտարակեցի առժամանակ ինչ մէն միայնակ Թումբ կանգնած էր Ռուսիոյ քաղաքական միջամտութեան. բայց երբ տապալեցաւ այդ Թումբն, այլ և ս բաց մնացին Հայոց Հայրապետութեան դռներն։ Ներսիսի յաջորդներն մինչեւ անձամբ չ՚ենթարկեցան Ռուսիոյ քաղաքական հարուածներուն՝ չը զգացին Թէ ի՛նչ է Ռուսիոյ նը-*

պատակն ։ Հայք բողոքեցին, բայց Ռուսիա բնաւ յետ չը կասեցաւ. և մինչեւ ա՛յն աստիճան յառաջ գնաց, որ Հայոց Ազգի Ընտրեալն ի բաց թողլով՝ զՄակարն անուանեց Կաթողիկոս, իւր յերիւրած կանդիտատական օրէնքին վրայ յենլով, որոյ դէմ ո՛չ միայն ընդհանուր բողոքներ եղած էին, այլ Մատթէոսի ընտրութեան ժամանակ Տաճկաստանի ներկայացուցիչներն՝ Իշխան Թումանեանց և Գուրգէն-Բէգեանց՝ Տաճկաստանէն ընդունած իրենց 90 քուէն Մատթէոսին տալէն զկնի՝ հրաժարած էին, համաձայն ունեցած պատուէրին, ո՛ւմ և իցէ քուէ տալ իբր կանդիտատի ։ Նոյնպէս Գէորգ Դ.ի ընտրութեան ժամանակ՝ Տաճկաստանի պատգամաւորք, Ներսէս եպիսկոպոս Վարժապետեան և Յ. էֆ. Նորատունկեան պաշտօնապէս բողոքած էին Էջմիածնի Տաճարին մէջ և արձանագրած. «ԶԳէորգ ընտրեմք, բայց զկանդիտատ ոք ո՛չ ճանաչեմք» ։ Իսկ 1885ի Ապրիլի 21ի ընտրութենէն զկնի՝ ո՞չ ապաքէն ամեն պաշտօնական եւ ժողովրդական հեռագիրք շնորհաւորեցին զմեզ որպէս ընտրեալ Կաթողիկոս [1] իսկ զՄակար ո՛չ երբէք, վասն զի Հայոց խղճի, Հայոց սովորութեան ու համոզման դաւանութիւնն է, որ մի հատ Կաթողիկոս կ'ընտրուի և ո՛չ երբէք երկու ։

Վերջին պահուն, երբ Կաթողիկոս կ'անուանէր զՄակար, Ռուսիա արդէն ապահով էր, արդէն գիտէր Տաճկաստանի գործող անձանց շատերուն կրօնական անտարբերութիւնն, և ոմանց հանդարտ խըղ-

---

[1] Տես ի Յաւելուածն ։

ճով դիւրափոփոխութիւնն. գիտէր նաև խեղճ ժողովրդեան անմասնակցութիւնն։ Ռուսիոյ Կառավարութիւնն գիտէր մանաւանդ որ ես ևս պիտի չը կարողանամ ձայն բարձրացնել մեր Եկեղեցւոյ և Հայրապետութեան բռնաբարուած իրաւանց համար. քանզի ձայնիս ազդեցութիւնն կոտրելու համար ամեն տեղ պիտի տարածայնէին թէ՝ Մելքիսեդեկ եպիսկոպոս իւր Կաթողիկոսութենէ զրկուելուն համար կը խօսի, և ո՛չ թէ Եկեղեցւոյ ազատութեան, և թերևս շատ միամիտներ իսկ դիւրաւ պիտի հաւատային։ Հողն պատրաստ էր Ռուս Կառավարութեան առջեւ, ուստի և բոլորովին յափն իւր ամփոփեց Հայրապետութիւնն, առ ոչինչ համարելով Ազգին Առաքելական դարաւոր ընտրական իրաւունքն։

Արդ՝ եթէ Ռուս Կառավարութիւնն տիրապետած է Հայոց Հայրապետութեան, տակաւին տիրած չէ անշո՛ւշտ Հայ սրտերուն. հետևապէս Հայաստանեայց Եկեղեցւոյ ամեն մի ճշմարիտ զաւակի պարտաւորութիւնն է ձայն բարձրացնել իւր Կրօնի և իւր Եկեղեցւոյ ազատութեան համար, հաւատացած լինելով թէ՝ ի՛նչ որ կարող է քաղցրացնել մեր վիճակն, ազնուացնել մեր էութիւնն, ապահովել մեր Ազգային ինքնագոյութիւնն, միով բանիւ ի՛նչ որ փափագելի է մի Հայու համար, բոլորն մեր Կրօնական Ազատութեան, մեր Քրիստոնէական Եկեղեցւոյ մէջ է. և առանց այս ազատութեան կարող չէ ծաղկիլ մեր կրօնական ոգին, կարող չէ զօրանալ մեր բարոյական ոյժն։

Ես ահա երեք տարիէն աւելի լռելէն զկնի՝ կ՚սկսիմ

ձայնս բարձրացնել Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ
զատութեան համար․ Կըսկսիմ խօսիլ, բայց մի միայն
ճշմարտութեան համար, ո՛չ երբէք Մակարի անձին
դէմ և ո՛չ բնաւ իմ անձին համար․ քանզի Մակար
արդէն այն օրէն կորուսած է իւր նշանակութիւնն
Հայութեան և Հայ Պատմութեան առջև, որ օրէն
որ իւր եկեղեցական կոչման և ուխտին հակառակ՝
հպատակած է օտարի կամաց, և ոչ թէ Աստուծոյ և
իւր Եկեղեցւոյ օրինաց․ իսկ իմ անձիս նկատմամբ կը
յայտարարեմ ահա՛ ի լուր բոլոր աշխարհի՝ թէ այն-
պիսի մեծ և անակնկալ պատիւ տրուած է ինձ, որ
իմ արժանաւորութենէս շա՛տ և շա՛տ բարձր է։
Այս պատիւն է — իմ ամենասիրելի Ազգիս **ՄԻԱՀԱ-
ՄՈՒՌ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆ** և Ռուսիոյ կայսեր **ՄԵՐԺՈՒՄՆ**։
Երկուսն ևս մեծ պատիւ են ինձ, և ուրեմն անձնա-
պէս բնա՛ւ, բնա՛ւ երբէք ցաւ չ՛ունիմ, և ո՛չ իսկ
վիրաւորուած եմ այն մատնիչներէն և դաւաճաննե-
րէն, որոնք երկրորդական դեր միայն կատարեցին։
Պիտի բարձրացնեմ ձայնս այն Ազգի Կրօնական Ա-
զատութեան համար, որ իսպառ սիրեց զիս իւր Ազ-
գովին վստահութեամբ․ պիտի բարձրացնեմ ձայնս
այն բռնաբարման դէմ, որ իսպառ մերժեց Ազգիս ի-
րաւունքն, իսպառ մերժեց զիս։ Եթէ Ռուս Կառա-
վարութիւնն թոյլ չը տուաւ ինձ Կաթողիկոսական
գահոյից բարձրութենէն լսելի առնել ձայնս իմ Եկե-
ղեցւոյս ազատութեան համար, գահոյից պատուան-
դանէն կարող եմ լսելի առնել իբրեւ խոնարհ պաշ-
տօնեայ։

Ռուս Կառավարութիւնն կը կապտէ մեր Եկեղեց-

ւոյ իրաւունքն և քաղաքականութեան կ'ենթարկէ մեր քրիստոնէական ազատ Եկեղեցին , որ իւր ազատութեան համար ամեն բան զոհած է ։ Նա ընդդէմ կը վարուի դարուս քաղաքակրթութեան , որ խղճի և կրօնի կատարեալ ազատութիւն կը քարոզէ ։ Նա ընդդէմ կը վարուի մանաւանդ Հայոց Ազգի հաւատարմութեան ։ Ռուսիոյ Ինքնակալն իւր Եկեղեցւոյ վեհապետն է . այսինքն եկեղեցին հպատակած է քաղաքականութեան . բայց Հայք Ռուս չեն . և ո՛չ Ռուսիոյ միւս հպատակ ազգերն ։ Ռուս կառավարութիւնն պէտք է որ ազատ թողու նոցա խիղճն , նոցա կրօնքըն , նոցա դաւանութիւնն , աւանդութիւնն , պաշտամունքն , ծէսն , արարողութիւնն , ուսուցումն , որոնք այնքան էական են մի ազգի , մի հասարակութեան , որքան շնչառութիւնն՝ թոքերու կազմութեան , որքան բաբախումն՝ երակի արեան ։ Պէտք է ազատ թողու , քանի որ նոքա իրենց կրօնքով բնա՛ւ չեն խառնուիր Ռուսիոյ քաղաքական գործերուն . քանի որ իրենց մտքէն անգամ չ'անցնիր հաւատքի պատրուակաւ կառավարութեան քաղաքական իշխանութիւնն վրդովել ։ Ցանուն արդարութեան պարտք կը համարինք ասել , որ Ռուս Կառավառավարութիւնն մի ազգ կը ջնջէ երբ Վրաց Եկեղեցւոյն տիրելով՝ հետզհետէ կը վերցնէ նոցա եկեղեցիներէն ազգային լեզուն ։ Ցանո՛ւն արդարութեան պիտի գոչենք , որ Ռուս քարոզիչներն շատ անարգ միջոցներով ուղղափառութիւն կը ծաւալեն Կովկասեան ցեղերու մէջ ։ Ցանուն Քրիստոնէական Կրօնի ամենավսեմ բարոյակրթիչ զօրութեան և յանո՛ւն մարդկութեան պիտի աղաղա-

կենք թէ՝ Ռուսիա այն օրէն՝ որ սկսած է իւր քաղաքական ափին մէջ ամփոփել Ռուսական Եկեղեցւոյ հոգեւոր իշխանութիւնն, աւելի ոյժ տուած է անկրօնութեան, փարիսականութեան, անբարոյականութեան· և եթէ հասարակ ժողովրդեան մէջ մնացած աւանդական Քրիստոնէութիւնն ևս չը լինի (որ դժբաղդաբար շատ տեղ մինչեւ սնոտիապաշտութեան հասած է), հաւատացէ՛ք, որ ի բաց առեալ բարեկիրթ եկեղեցականներ և գերդաստաններ, Ռուսիա, իբր քրիստոնեայ և չարունակ յանուն Քրիստոնէութեան աղմուկ և պատերազմ յարուցանող Տէրութիւնն, շատ տխուր տեսարան կը ներկայացնէ։ Մենք խօսելով սոյն ճշմարտութիւնն՝ ո՛չ թէ կը թըշնամանենք, քա՛ւ լիցի, այլ մի սուրբ հարկ կը վճարենք այն երկրին, ուր զարգացած է մեր մանկութիւնն· և համոզուած ենք թէ՝ համամիտ են մեզ հիւսիսային Պետութեան մէջ գտնուած ամեն բարոյասէր և ժողովրդասէր Ռուսներն։ Բայց Ռուսիա մի Պետութիւն է, եթէ իւր Եկեղեցին իւր քաղաքական իշխանութեան տակ առած է, միւս կողմէն իւր ազգըն կորստեան վտանգ չ՛ունի, և կարող է ժամանակ գալ, որ նոյն իսկ Ռուսիա պարտաւորի ազատ թողուլ իւր Եկեղեցին իւր շահուց համար· իսկ Հայոց Եկեղեցւոյ ազատութիւնն գրաւելով՝ Հայոց ազգութեան կորուստ կը պատրաստուի· և այս առթիւ ի՛նչ որ Ռուս Կառավարութիւնն իբր խնամակալութիւն կը համարի, մեզ համար տիրապետութիւն է, որով անձայն և անշշուկ մեր Եկեղեցին կը կողոպտուի իւր դարաւոր հարստութենէն· քանզի չը կայ

*հարստութիւն առաւել բարձր, առաւել թանկագին քան կրօնի ազատութիւնն, քան խղճի ազատութիւնն որ մեր մարդկային էութեան ամենալաւ, ամենավսեմ և անբաժան մասն է կամ նոյն ինքն Աստուած ի մեզ յայտնեալ։*

*Երբ Ռուս Կառավարութիւն կամի օրէնք տալ մեր Եկեղեցւոյն, միթէ Ազգովին պարտական չե՞նք ասել։ «Մեր Եկեղեցին օտար օրինաց, օտար* Պալամէնթայի *կարօտ չէ։ Քանզի ինքն իրեն համար օրէնք ունի, որով այսքան դարեր ապրած է»։*

*Երբ Ռուս կառավարութիւնն կը հետամտի խառնուիլ մեր հոգևոր գործերուն, կամի ինքն տնօրինել, ինքն հաստատել, ինքն հանել, ինքն գնել, միթէ պարտաւոր չե՞նք բողոքել. «Մի՛ կապտեր մեր հոգևոր ազատութիւնն. քանզի մենք իբրև քրիստոնէական Եկեղեցւոյ հարազատ զաւակներ՝ գիտենք արդէն թէ՝ ո՛ւր որ լինինք, հպատակ ենք երկու Տէրութեան — մեր խղճով հպատակ ենք հոգևորին, որուն ո՛չ մի արարած չը խառնուիր բաց յ'Աստուծոյ. իսկ մարմնով և մեր գոյքով հպատակ ենք քաղաքական օրինաց. իբրև քաղաքացի հնազանդ ենք Իշխանութեան. իբրև հաւատացեալ, իբրև քրիստոնեայ հնազանդ ենք միայն Աստուծոյ»։*

*Երբ Ռուս կառավարութիւնն կը հետամտի իւր հրամաններով և կանոններով մեր Եկեղեցին մտնել, միթէ պարտաւոր չե՞նք ասել իրեն, ի՛նչ որ ասաց Մոսկուայի Մետրօպօլիտն երբ* Լատին խաչն *կ'ուզէին Մոսկուա մտցնել. «Եթէ թոյլ տրուի Պապի պատուիրակին* Լատին խաչով *քաղաք մտնել, մենք բոլոր եկե-*

ղեցականներով միւս դռնէն դուրս կ'ելնենք ։ (1)

Երբ Ռուս Կառավարութիւնն մեր կրթական իրաւունքն մեր Եկեղեցւոյ ձեռքէն կ'առնու. միթէ պարտաւոր չենք յայտարարել թէ · «Դպրոցն կարօտ է Կրօնքի · Կրօնքն կարօտ է Դպրոցի ։ Չկայ Եկեղեցի

---

(1) Իւան Գ. (Վասիլ Վասիլովիչի որդին և յաջորդն) կամեցաւ ամուսնանալ Յունաց Պալէոլոգ կայսեր Թովմայ եղբօր դըստեր Սոֆիայի հետ ։ Թովման Մօրէայի Վասալն էր, Բիւզանդիոնի կայսրութեան կողմէն ։ Երբ Օսմանցիք Կ. Պոլիսն առին, Թովման ապաստանեցաւ ի Հռոմ, անդ մեռաւ, և իւր զաւակներն մնացին Պօղոս Բ. Պապի խնամոց տակ, ընդ որս էր Սոֆիան ։ Երբ Իւան այրիացաւ, իւր գործակալաց միջոցաւ Սոֆիայի ձեռքը խնդրեց ։ Եւ երբ իմացաւ թէ՝ Պապն ամենեւին հակառակ չէ, 1471ին դեսպանութիւն ղրկեց պաշտօնապէս ։ Սիքստոս Դ. Պապն՝ Սոֆիայի հետ ուղեկից կարգեց մի Կարդինալ մինչեւ ի Մոսկուա, և ճանապարհին ամէն քաղաքի մէջ հանդիսիւ կընդունուէր ։ Առջեւէն կերթար մի Լատին խաչ ։ Ամէն տեղ կը զարմանային. բայց ձայն չ'էին հաներ. երբ մօտեցան Մոսկուային, և կը պատրաստուէին միւս օրն հանդիսիւ քաղաքն մտնել, Մետրոպոլիտն մարդ ղրկեց Իւան մեծ Դքսին, յայտնելով որ եթէ նա թոյլ տայ Պապի պատուիրակին Լատին խաչով քաղաք մտնել, ինքն միւս դռնէն պիտի ելնէ բոլոր եկեղեցականներով ։ (Եկեղեց. Տարեգ. Կայսերական Մատենադարանին Վիեննայի) ։

Ժողովուրդն ալ եկեղեցականաց կողմն էր ։ Իւան իսկոյն Բոյարներ ղրկեց Պապի նուիրակին, և իրողութիւնն հասկցուց մեղմաբար ։ Խաչն իսկոյն փաթաթուեցաւ և դրուեցաւ մի սայլի վրայ, որ կերթար իշխանուհւոյն ետեւէն, և յանձամ միայն Մետրոպոլիտն դիմաւորելու ելաւ ։ Իշխանուհին առաջնորդուեցաւ Մայր Եկեղեցին, և ամուսնութիւնն կատարուեցաւ 1472ին ։

Այս Իւանն էր, որ ամեն առաւական եկեղեցական գերիշխանութիւն ջնջեց և ամփոփեց իւր քաղաքական իշխանութեան մէջ ։ Իւանի կազմած այս միապետութենէն է, որ կը բղխի ամենայնինչ Ռուսիոյ Կառավարութեան մէջ ։

*առանց դպրոցի, չկայ դպրոց առանց Եկեղեցւոյ* [2], *և Հայոց Եկեղեցին ու դպրոց անբաժան ընթացած են. Հայոց վանքերն բոլորն դպրոց եղած են. քանզի այն Եկեղեցին որ չ'ուսուցաներ, Եկեղեցի չէ. քանզի ուսուցանելն Եկեղեցւոյ մի անմենամեծ և էական իրաւունքն է»։*

*Այսպիսի բռնաբարման առջև լաւըն ինքնապաշտպանութիւն է. պէտք է ձայն բարձրացնել Եկեղեցւոյ իրաւանց համար. պէտք է բողոք բառնալ։ Եթէ Պատրիարք ու ժողովականք ոմանք մեղանչեցին մեր Եկեղեցւոյ ազատութեան դէմ* 1885 *Նոյեմբեր* 1 *գումարման մէջ, մեղանչեցին* Պալաժէնիան *մերժող Կաթողիկոսաց դէմ, նախնի արթուն Հայրապետաց, արի Նահատակաց, անձնազոհ Մարտիրոսաց դէմ, որոնք իրենց Եկեղեցւոյ և կրօնի ազատութիւնն ամեն ազատութենէ բարձր դաւանեցին։ Եթէ նոքա մեղանչեցին և խնդիրն լաւութեան տուին, միթէ Ազգն պիտի վհատի՞, պիտի կարծէ՞ թէ Եկեղեցւոյ ազատութեան ոգին, կրօնական ազատութեան ոգին միշտ բարձրե՞րը կը բնակի Պատրիարքական և այլ աթոռներուն վերայ։ Ո՛չ, ո՛չ, կրօնական ազատութեան ո-*

---

*Մեծն Պետրոս այն փոփոխումն պատրաստ գտաւ, բայց ի հարկէ ինքն էր, որ աւելի հաստատ դրութեան վերածեց և ժողովուրդն նոյն դրութեան հպատակեցուց։*

*Մեծն Պետրոս էր որ Պատրիարքական իշխանութիւնն կամ աթոռութիւնն ջնջեց, և նորա տեղ հաստատեց Եպիսկոպոսաց ժողով, և անուանեց Святѣйшій կամ Правительствующій Сѵнодъ։ Որովհետեւ այն ժողովն կախեալ է կայսերաց դերիշխանութենէն, ուստի և կայսերք կը համարուին Գլուխք Ռուսական Եկեղեցւոյ։*

[2] Տե՛ս ԿՐԹԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ։

*դին շատ անգամ կ'ապաստանի այնպիսի խոնարհ տեղեր, որ մարդոյ մտքէն անգամ չ'անցնիր։ Եկեղեցւոյ ազատութեան նահատակներն միայն Եպիսկոպոսներ ու Նախարարներ չեն եղած, այլ շատ անգամ հասարակ վանականներ ու քահանաներ, շատ անգամ պարզ աղօթաւորներ ու նաեւ տկար կանայք։ Պէտք է իմանանք որ եթէ հալածանք էր Յազկերտի հրաւէրն ի կրակապաշտութիւն, հալածանք է նոյնպէս մեր Եկեղեցւոյ ընտրական իրաւունքն մեր ձեռքէն կորզելն։ Պէտք է իմանանք որ եթէ Պատարագի բաժակին մէջ ջուր խառնելն հակառակ է մեր Եկեղեցւոյ պաշտաման, որուն համար մեր Նախնիք այնքան ընդդիմացան, նոյնպէս հակառակ է մեր Ազգային եկեղեցական ընտրութեան մէջ օտարի մատն, օտարի թելադրութիւնն, օտարի քաղաքականութիւն խառնելն։ Ո՞վ չգիտեր, որ Հայոց Եկեղեցւոյ զաւակաց ընտրութեամբն ու վկայութեամբն է, որ ընտրեալքն կը սարկաւագանան, կը քահանայանան, կ'եպիսկոպոսանան, կը կաթողիկոսանան և կ'օծուին։ Ո՞վ չգիտեր, որ սոյն ընտրութեան հիմն ընտրողաց սէրն ու յարգանքն է, առանց որոյ չըկայ բարոյական իշխանութիւն։ Օտարի միջամտութնն, օտարի խառնուիլն թշնամանք է մեր Եկեղեցւոյ Ձեռնադրութեան Ս. Խորհրդոյն որ սիրոյ վրայ հիմնուած է և ո՛չ բռնութեան։ Օտարն ինչպէս որ իրաւունք չ'ունի միջամտել մեր Պատարագի Սուրբ Արարողութեան կամ այլ Խորհրդոց, նոյնպէս իրաւունք չունի միջամտել (որ և իցէ պատրուակաւ) մեր Եկեղեցւոյ Ձեռնադրութեան։ Ո՛հ, քանի՛ տգէտ էին այն փաստաբաններն, որոնք համբա-*

ւեցին թէ՝ Հայաստանեայց Եկեղեցին ընտրական օրէնք չունի։ Նոքա ուրացան կամ մոռացան անշո՛ւշտ որ Հայոց Եկեղեցին ամենէն մեծ օրէնքն ունի, ամենէն ազատականն, ամենէն քրիստոնէականն — ՎԿԱՅՈՒԹԵԱՄԲ ԱՄԵՆԱՅՆ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ։ Նոքա ուրացան կամ մոռացան, որ Եկեղեցին ինչպէս Քահանայութեան, նոյնպէս և Եպիսկոպոսութեան ու Կաթողիկոսութեան համար կը պահանջէ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ժողովրդեան։ Ժողովուրդն է որ կ՚ընտրէ, ժողովուրդն է, որ կը վկայէ, առանց օտարի միջամտութեան. քանզի իրեն համար, իւր Եկեղեցւոյն համար պաշտօնեայ կը կացուցանէ, և ո՛չ ո՛ր և է քաղաքականութեան։ Ժողովրդի վըկայութիւնն է ահա՛ Հայոց Եկեղեցւոյ ընտրական ամենամեծ օրէնքն։ Անտարակոյս մի կատարեալ հերձուած, մի հերետիկոսութիւն է Հայոց Եկեղեցւոյ դէմ՝ օտարի ընտրութիւնն։ Հայոց Եկեղեցին անհարազատ կը ճանաչէ ա՛յն Եկեղեցականն, ա՛յն Կաթողիկոսն, որ օտարի կողմէն կուգայ։ Ճշմարիտ հովիւ չ՚է՛ նա, «Որ ո՛չ մտանէ ընդ դուռն ի գաւիթ ոչխարաց»։

Միթէ ի ժամանակին այսպէս չը վարուեցա՞ն Հայք Բրքիշոյի, Շմուելի և Սուրմակի դէմ, որք օտարի ձեռամբ Կաթողիկոսական Աթոռն յափշտակել նկըրտեցան։

Միթէ իսպառ կործանիչ և մոլորական չէ՞ այն կեղծ երկիւղածութիւնն իսկ, որով ոմանք կ՚առարկեն իբր թէ մեր իրաւունքն պաշտպանելով և օտարի միջամտութիւն մերժելով՝ մեր Եկեղեցին կը բաժնուի, մեր Հայրապետութիւնն կը բաժնուի։ Արդեօք իրաւունք զոհելով, կրօնական ազատութիւն զոհելով,

Եկեղեցին ու Հայրապետութիւն կանգո՞ւն կը մնան, որ կարենան անբաժան մնալ։ Արդեօք օտարի միջամտութիւնն բոլորովին չսառեցնե՞ր Հայ ժողովուրդն իւր Եկեղեցիէն, իւր Հայրապետութենէն։ Միթէ այս սառնութիւնն մի սոսկալի բաժանումն չէ՞ Հայ Ազգին և Եկեղեցւոյն համար։ Միթէ Եկեղեցւոյ միութեան պայմա՞ն է Կաթողիկոսական անուան լոկ յիշատակութիւնն, և այն եւս օտարընտիր Կաթողիկոսի։ Միթէ Հայոց Հայրապետութիւնն չկո՞րծանիր, չ՚ա՞նհետեր, երբ շիջանի ժողովրդի Քրիստոնէական և Ազգային եռանդն ու սէրն առ այդ Հայրապետութիւն։ Եթէ Հայ սրտերէն բաժնուած մի Հայրապետութիւն կարող է գոյութիւն ունենալ, դա անշուշտ Հայոց Հայրապետութիւն կարող չէ լինել, և ո՛չ իսկ Հայոց բուն Հարապետութեան ստուերն անգամ. քանզի Հայոց Հայրապետութիւնն իւր Առաքելական դարաւոր իրաւունքներով և Ազգային յատկանիշներով միայն Հայոց Հայրապետութիւն եղած է և կարէ լինիլ։

Միթէ իսպառ հակառակ չէ՞ Քրիստոնէական ոգւոյ և Կրօնական ազատութեան՝ այն նենգ կամ տգիտական առարկութիւնն եւս, որով ոմանք Ազգը կ՚ահաբեկեն, Ազգի բարոյական ոյժն կը ջլատեն՝ շարունակ կրկնելով թէ՝ Ռուսիա հզօր Տէրութիւն է, ի՞նչ կարող ենք առնել, մոռնալով կամ ուրանալով, որ ա՛յլ է բռնութիւն, ա՛յլ է իրաւունք· և ամենէն մեծ զօրութիւնն՝ իրաւունքն է։ Այո՛, շատ անգամ կը կրկնուի բռնաւորներու պատգամն թէ· «Իրաւունքն հզօրինն է»։ Բայց մարդկայնն Ազգի Պատմութիւնն ցոյց

կը տայ, որ ճանաչուած իրաւունքն միշտ յաղթական իրաւունք է։ Ռուսիա հզօր Տէրութիւն է, այո՛, բայց կը հետամտի մեր Եկեղեցին փոխել, մեր լեզուն փոխել, մեր արիւնն փոխել, մեր տիպն փոխել, միով բանիւ կը նկրտի զմեզ Ռուսութեան մէջ ձուլել։ Իրաւունք ունի՞. — Ո՛չ. պէ՞տք է որ լռութեամբ ընդունինք այս փոփոխութիւններն. — Ո՛չ, յաւիտեան ո՛չ, քանզի մեր Եկեղեցին, մեր խիղճն, մեր լեզուն, մեր Ազգային տիպն Աստուծոյ պարգեւներն են, և մեր Նախնիք աւելի սիրած են մեռնիլ քան թէ այդ պարգեւներն փոխել կամ ուրանալ։ Մենք ամենեւին քաղաքական խնդիր չ՛ունինք։ Ռուսիոյ Կառավարութեան հետ. մեր խնդիրն բարոյական խնդիր է. խղճի և Եկեղեցւոյ ազատութեան խնդիր է։ Ամեն Տէրութիւնք, ո՛ւր որ Հայ կայ, մանաւանդ Օսմանեան բարեխնամ և ժողովրդասէր Տէրութիւնն, առ որ ամեն Հայ երախտապարտ պիտի մնայ յաւիտեան, ոչ միայն յարգած են մեր Կրօնական, Կրթական իրաւունքներն, այլ և հրովարտակներով հաստատած։ Ի՞նչ է ուրեմն չարժառիթն որ Ռուսիոյ Կառավարութիւնն կամի բացառութիւն կազմել և տիրել այն Եկեղեցւոյ զաւակներուն խղճին և Կրօնական ազատութեան վրայ, որոնք քաղաքականապէս հլու և հաւատարիմ հպատակներ են։ Միթէ պարտաւոր չե՞նք բողոքել թէ՝ Կրօնական ազատութիւնն մեր Եկեղեցւոյ օրէնքն է, մեր Եկեղեցւոյ հաւատքն է։ Մեր Եկեղեցին ինքն եղած է և ինքն պէտք է լինի իւր տէրն, իւր իրաւանց հսկողն, իւր զաւակաց հոգւոր և բարոյական պիտոյից մատակարարն. քանզի ինքն իւր սոյն կեան-

քով միայն ապրած է, քաղաքական կեանքի հետ խառնուելէ միշտ զգուշանալով։ Հաւատացեալն ինքն պէտք է հոգայ իւր Կրօնքն, որ Կրօնք ունենայ։ Հայք այսպէս հաւատացած են և այսպէս գործած են։ Ճշմարիտ Հայն հալածանքէ վախցած չէ. քանզի պարտաւորութիւն և զոհողութիւն իրարմէ անբաժան դաւանած է։ Հայք այսօր եւս այս դաւանութիւնն, այս Եկեղեցւոյ ազատութեան իրաւունքն պիտի հռչակեն, որպէս զի յարգ ու պատիւ մատուցած լինին իրենց Քրիստոնէական Կրօնին։ Հայք պարտաւոր են ցոյց տալ աշխարհի, որ մեռած չէ իրենց սրտի մէջ Կրօնի ազատութեան սէրն, Կրօնական եռանդն, իրենց Եկեղեցւոյ իրաւանց համար ունեցած նախանձախնդրութիւնն, իրենց նախնեաց աւանդներու պահպանութեան հսկողութիւնն... Ամեն Հայ պէտք է դաւանի որ իւր բազմաչարչար Եկեղեցին է, որ Ազգին մէջ միշտ արծարծած է մարմնաւոր և նոյն իսկ մտաւոր կեանքէն աւելի բարձր մի հոգեւոր կեանք, մի քրիստոնէական կեանք։ Ամեն Հայ պարտաւոր է սթափիլ, պարտաւոր է գործել, պարտաւոր է դիմել, ուր հարկն է և պարտաւոր է աղօթել որ իւր Եկեղեցին կանգուն մնայ, իւր հոգեւոր կեանքն չը շիջանի, իւր Եկեղեցւոյն կորուստ սպառնացող վտանգներն անհետին։

Ո՛վ դո՛ւք, սաղմոսերգու վանականներ, երբ աղաղակէք ձեր անապատներուն մէջ. «Աստուա՛ծ, Դու յարուցեալ գթասցիս ի վերայ Սիոնի, ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ» յիշեցէ՛ք, որ Հայոց Եկեղեցին վտանգի մէջ է, և ազատութիւն հայցեցէ՛ք։

Ո՛վ երգասաց դպիրներ և հեզաբարբառ մանուկներ, երբ երգէք. «Թագաւո՛ր երկնաւոր, զԵկեղեցի քո անշարժ պահեա՛», յիշեցէ՛ք, որ Հայոց Եկեղեցւոյ ազատութեան հիմունքն կը փորուին և աղերսեցէ՛ք որ անշարժ մնայ մեր Ազգի հաստատութեան սիւնն, մեր Սուրբ Եկեղեցին։

Ո՛վ սրբազործ Պատարագիչներ, երբ մրմնջէք առ Հայրն երկնաւոր. «Օրհնեա՛ զՍուրբ Կաթուղիկէ և զԱռաքելական Եկեղեցի քո, զոր փրկեցեր պատուական արեամբ Միածնի քոյ և ազատեցեր խաչիւն սրբով», արտասուօք հայցեցէ՛ք շնորհել նմա զանշարժութիւն ի թշնամեաց պատերազմէ։

Եւ դո՛ւ, ժողովուրդ Հայոց, երբ կը լսես Շարականաց սքանչելի նուագներն ու հայցուածներն Եկեղեցւոյ հաստատութեան համար, դո՛ւ ևս ձայնակցէ՛, դո՛ւ ևս աղաղակէ՛. «Հաշտարար ընծայ Հօր ազգի մարդկան, Քրիստոս Աստուա՛ծ, զԵկեղեցի քո հաստատեա՛ խնդրուածովք նահատակաց ի քէն ընտրելոց, բարերար Փրկիչ, միայն մարդասէր»։

Իսկ ես ի կնիք բանիցս՝ կ'աղաղակեմ առ Քեզ ի խորոց սրտիս, ո՛վ Աստուած. Դո՛ւ կը ճանաչես զիս և գիտես, որ նենգութիւն չկայ իմ լեզուի մէջ։ Դու գիտես, որ ո՛չ թէ այսօր է, որ ես կը խօսիմ, այլ իմ պատանեկութենէս ի վեր. ո՛չ թէ անձնական օգտի կամ ակնկալութեան համար է, որ կը խօսիմ. ո՛չ թէ ո՛ր և է Տէրութեան կամ ազգի դէմ թշնամութիւն կամ ատելութիւն ունիմ և կը խօսիմ, ո՛չ ո՛չ, Տէ՛ր իմ և Աստուած, այլ միայն կը խօսիմ ա՛յն Եկեղեցւոյ ազատութեան համար, որ գնուած է Քո

Միածին Որդւոյ արիւնովդ։ Քո Աւետարանդ փայլեցաւ աշխարհի վերայ իբրեւ լոյս գեղեցիկ առաւօտու։ Ազգք և ազինք ցնծութիւն զգեցան։ Քո Աւետարանի փրկարար լոյսն առաջին օրէն ծագեցաւ Հայոց ազգին վրայ, որ ժառանգորդ եղեւ փրկութեան Աւետարանիդ, անվտանգ առաջնորդուեցաւ Քո լուսովդ՝ խաւար դարերու մէջ և անկորուստ պահպանեց Քո շնորհաց պարգեւներն — իւր Կրօնական ազատութիւնն, իւր Առաքելական իրաւունքներն, իւր բարձր կոչումն, իւր հոգեւոր զօրութիւնն։ Աստուա՛ծ իմ, այց արա՛ Քո ժառանգութեանդ, այց արա՛ այն Այգւոյն, զոր տնկած է Քո Աջն, և որ ոռոգուած է բիւրաւոր մարտիրոսաց արիւնով։ Ազատէ՛ Քո ժառանգութիւնդ գերութեան վտանգէն. զի Քո ձեռքըն են թագաւորաց սրտերն և կարող ես փոխել ինչպէս կամիս, որ ազատ թողուն Քո զաւակաց խիղճն, պաշտամունքն, Քո Եկեղեցւոյ Տեսչութիւնն, որուն վրայ Դու միայն ունիս իշխանութիւն և որ միայն Քո օրէնքով պիտի կառավարուի։ Աստուա՛ծ իմ, ազատէ՛ Հայոց Եկեղեցին, ազատէ՛ Հայոց Հայրապետութիւնն։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Հայոց Ազգի համոզումն՝ ու դաւանութիւնն իւր Եկեղեցական պաշտօնէից ընտրութեան նկատմամբ միշտ անփոփոխ է Քրիստոնէութեան առաջին դարերէն մինչեւ մեր օրերն ։*

*Հայոց Ազգն միշտ մի ընդհանուր Կաթողիկոս ընտրած է, և միշտ ինքն ընտրած է ։ Թողունք անցելոյն պատմութիւնն պատմագիտաց, և բաւական համարինք միայն կարգաւ յառաջ բերել այս տեղ այն պաշտօնական գրուածաց օրինակներն կամ նշանաւոր հատուածներն, որոնք կը վերաբերին* 1885 *Թուականի* 21 *Ապրիլի Կաթողիկոսական ընտրութեան ։*

*Ա. Ազգային Ժողովն իւր կողմէն պատուիրակ կարգելով Կաթողիկոսական տեղապահ Տ. Մկրտիչ Ս. Արքեպիսկոպոսն՝ այսպէս կը գրէ իւր գրութեան մէջ. «Ըստ այսմ ահա փութամք առաջի առնել Համազգային Ընտրողական պատկառելի Ժողովոյ Մայր Աթոռոյդ զցանկ երից ընտրելեաց Հայոց Տաճկաստանի, որք են.*

*Ա. — Ամենապատիւ Տ. Մկրտիչ Ս. Արքեպիսկոպոս Խրիմեան, Նախկին Պատրիարք Կ. Պօլսոյ. Բ. — Գեր. Տ. Մելքիսեդեկ Ս. Արքեպիսկոպոս Մուրատեան, Առաջնորդ Զմիւռնիոյ վիճակին. Գ. — Գեր. Տ. Խորէն Ս. Եպիսկոպոս Աշըգեան, Հայր Վանուցն Արմաշու ։*

*Արդ՝ փութամք թղթովս այսուիկ յանձն առնել Բարձր Սրբազնութեան Ձերում զպաշտօն պատուիրակութեան Հայոց Թուրքիոյ, խնդրելով զի հաճեսջիք ընթեռնուլ զայս պաշտօնական Թուղթ մեր յատենի Համազգական Ընտրողական պատկառելի Ժողովոյն, ներկայացուցանել նմա զայսուիկ զերիս Ընտրելիս յանուն համօրէն վիճակացն Հայոց, որ ընդ հովանեաւ Օսմանեան Պետութեան, և, ըստ եղանակի նշանակելոյ ի տեղեկագրին անցելոյ ամի, բարդել ի քուէայսն մեր զգումար քուէից պատկառելի Ժողովոյդ, որպէս զի ԵՊԻՍԿՈՊՈՍՆ՝ որ ստասցի զառաւելագոյն թիւ ձայնիցն՝ ՀՌՉԱԿԵՍՑԻ ԿԱԹՈՂԻԿՈՍ ամենայն Հայոց ըստ նախնաւանդ ծիսից և օրինաց Հայաստանեայցս Ս. Եկեղեցւոյ։»*

*Բ. — Ս. Էջմիածնի Համազգային Ժողովոյ աշխարհական պատգամաւորներն կ'երդնուն մի ԿԱԹՈՂԻԿՈՍ ընտրել, և ո՛չ երբէք Կաթողիկոսացուներ։ Ահա՛ իրենց երդման օրինակն.*

ԵՐԴՄՆԱԳԻՐ

*Մեք ի ներքոյ անուանեալքս խոստանամք և երդնումք յանուն Ամենակարողին Աստուծոյ, Առաջի Սրբոյ Աւետարանի նորա, առ այն թէ ցանկամք և պարտիմք յայժմ առաջիկայ ընտրութեան Ծայրագոյն Պատրիարք Կաթողիկոսի ամենայն Հայոց վասն գլխաւոր կառավարութեան Սրբոյ Լուսաւորչեան Եկեղեցւոյ Հայոց և Ծայրագոյն տեսչութեան Եկեղեցականաց նորին, ըստ մաքուր խղճի մտաց և պարտուց մերոց առանց իրիք աչառութեան և սեպհական ակնկալութեանց ի բաց հերքելով ի մէնջ զամենայն մախանս թշնամութեան և կամ զօրպիսի և իցէ շաղկապ մերձաւորութեան և բարեկամութեան, ընտրել ի միջոյ հո-*

*գեւորականաց հայրենի Եկեղեցւոյ մերոյ՝ ԶԱՅՆՊԻՍԻ ԱՆՁՆ, զոր ըստ յատկութեանց հանճարոյ և խղճի մտացն առաւել ընդունակագոյն համարիմք մեք , և յո՛րմէ ակն ունիմք , զի ի կատարումն պարտաւորութեանց իւրոց , զորս դնէ ի վերայ նորա այս վեհ աստիճան հոգեւոր , հանդիսացուսցէ նա զինքն ջերմեռանդ պաշտօնեայ Աստուծոյ և հոգունակ անօրէն բարօրութեան և օգտի Եկեղեցւոյն Քրիստոսի և հաւատացեալ Հայրապետական իշխանութեան նորա ի վերայ բանաւոր հօտին Քրիստոսի ։ Իսկ եթէ այլազգ վարեսցուք , յորժամ իբրեւ անհոգ չ՚օգտէ Եկեղեցւոյ և ճշմարիտ որդւոց նորին , յորում կայանայ և սեպհական օգուտն մեր , ենթադրեմք զանձինս մեր մեղադրանաց եղբայրակցաց մերոց և ի հանդերձելումն պատասխանատուութեան առաջի Աստուծոյ և ահեղ դատաստանի նորա ։ Ի վախճան երդմանցս վասն անաչառ ընտրութեան՝ համբուրեմք զԲան և զԽաչ Փրկչին մերոյ, Ամէն ։*

*Երդմնեցուցի*

Երեմիա Եպիսկոպոս

*Ըստ այսմ երդման երդուաք*

Աբգար Յովհաննիսեանց
Համբարձում Առաքելեանց
Ներսէս Աթաբէկեանց
Աղեքսանդր Ղազազեան
Յովհաննէս Սարգսեանց
Աղեքսանդր Լալայեանց
Սիմէօն Աթանասեանց
Իսահակ Ալաճալեանց

*Գ. — Համազգային Ժողովոյ Նախագահ Տ. Մըկըրտիչ Ս. Արքեպիսկոպոսն կը բանայ Ընտրողական ժողովն հետեւեալ նշանաւոր ատենախօսութեամբ , որով կը յորդորէ ընտրել ի գահակալութիւն և ի յաջորդութիւն Ս. Հօրն մերոյ Լուսաւորչի արժանաւորագոյն հոգեւորական անձն ։*

## Սրբազան Եղբարք և Գերամեծար Պատգամաւորք Ազգիս·

Այս խորհրդաւոր և նշանաւոր պահուս ժողովելով Սրբոյ Մայր Տաճարիս մէջ, իւրաքանչիւր ոք մեզանից կը զգայ անշո՛ւշտ յանձն իւր ներկայ պատկառելի ակմբիս մեծախորհուրդ նպատակըն, կը զգայ անշո՛ւշտ ամեն ոք մեզանից թէ՝ ի՞նչ ծանրակշիռ պարտականութիւն ստանձնած է, զոր լիայոյս հաւատով վստահութիւն դրած է մեր վերայ զմեզ ընտրող միլիոնաւոր Հայ ժողովուրդն՝ իւր եկեղեցականներով հանդերձ։ Մեր ամենասիրելի ազգայնոց այդ կատարեալ հաւատն և վստահութիւնն ի բարին և յօգուտ Ազգին և Եկեղեցւոյ ի գործ դնելու և մինչև վերջն իւրեանց յանձն առեալ նուիրական պարտաւորութեանց հաւատարիմ մնալու համար, Գերամեծար Պատգամաւորք Ազգիս, համաձայն դարաւոր սովորութեան՝ ի մէջ Տաճարիս և առաջի Սրբոյ Սեղանոյս՝ յանուն ահաւորին Աստուծոյ, հրապարակական ուխտիւք և երդմամբ վաւերացուցին զայն, որպէս զի Աստուծով ձեռնարկելի իւրեանց սոյն վսեմ Գործն կատարեն ըստ ամենայնի խղճի մտօք։ Միանգամայն ի բաց մերժելով և մերկանալով զհոգի դատապարտելի կուսակցութեան, զհոգին գահավէժ խտրութեան. ընա՛ւ երբէք չը նախապաշարիլ որ և իցէ ներքին և արտաքին պատճառներէ, այլ զգենուլ զհոգի հաւատարմութեան, արդարախոհութեան և անաչառութեան, քաջ ի միտ առնլով թէ՝ ո՛չ յանխորհուրդս ժողովուած եմք մեք այս միակ պարծանաց սրբավայր Տաճարիս մէջ, այլ թէ ժողոված եմք, յանուն Հայութեան. ուրեմն և յանուն Հայութեան և Հայաստանեայցս Սուրբ Եկեղեցւոյ ընտրելու եմք Պետ և Գլուխ։ Ուստի ընդ ամենայն ծագս աշխարհի ուր ուրեք եթէ կայ և կը գտնուի Հայ անունով և կրօնիւք գէթ մի ճետ և անհատ, նա անդամ է ազգային մարմնոյ և հարազատ որդի մերս Եկեղեցւոյ։ Խտրութիւն պէտք չէ մեզ դնել. զի ամենեքեան որդիք եմք միոյ Առաքելական Եկեղեցւոյ և անդամք միոյ Ազգի. իսկ եթէ խտրութիւն դնելու համար անհրաժեշտ հարկ կը նկատուի՝ բայց միայն բնականաբար և բարոյապէս այդ անբռնաբարելի ճշմարտութիւնն ճանաչելու եմք և որոնելու այն արդարամիտ իրականութեան և գործողութեան շրջանակին մէջ, զոր ահա՛ւասիկ դրած

են գրաւորապէս մեր առջեւ մեծամասնութիւն Հայոց Տաճկաստանի, որոց այժմ չեղին՝ որպէս թուի ինձ, չէ վայելուչ ըստ ուղիղ տրամադրութեան ազգային դարաւոր անժխտելի պայմանաց ։ Եւ որպէս զի ապացուցանեմք մեր Ազգին, ապացուցանեմք ընդհանուր լուսաւորեալ աշխարհիս, թէ Հայք ևս իւրեանց Ազգային գործերն լրջմտութեամբ և նրբաքննին հեռատեսութեամբ գիտեն տնօրինել և գիտակցաբար գործել՝ մանաւանդ թէ տխուր անցեալէն մի խրատական ազդու դաս ևս առնելով, փութամք համերաշխ սիրով միաբանութեամբ ընտրել ի գահակալութիւն և ի յաջորդութիւն մեծի Պարթևազնին Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի և յընդհանրական կաթողիկոսութիւն ամենայն Հայոց այժմեան գտնուածներէն այն [illegible] հոգեւորական անձն՝ որն պատկառանք կը տածէ ամենեցուն, և որոյ գործոց և կենաց բարի անցեալն և ներկայն՝ նա մանաւանդ վարդապետական կատարեալ հմտութիւնք և եռանդագին գործունէութիւնքն արդէն անկասկածելի յատկութիւնք են դարձել նորա համար ։ փութամք ընտրել ի հովուապետութիւն Հայաստանեայց Ազգի և Եկեղեցւոյ [illegible] [illegible] անձն՝ որ իբրեւ հովիւ իւր անքուն հսկողութեամբն դէտ կեցած է միշտ իւր հաւատացեալ հօտին ։ Այո՛, ցանկալի է տեսանել այդպիսի բարեմասնութեամբ օժտեալ մի անձն՝ անցած ի գլուխ ղեկավարութեան Ազգի եւ Եկեղեցւոյ ։ փութամք ի վերջոյ միանալ ի մի սիրտ և հոգի համերաշխութեան և իբրեւ որդիք հարազատ երկանց մօրս մեր Սուրբ Եկեղեցւոյ ի բաց պարուրել նորա լուսափայլ երեսէն այն սգազգեաց տխրութեան կրկնակի սեւաթոյր քօղն, որով ահաւասիկ երեք ամք են պատած է, նա կայ և մնայ ի սուգ թախծութեան ։ Զի յետ մահուան երջանկայիշատակ Գէորգ Դ.ի մեծագործ Հայրապետի՝ երբ անցեալ տարի սոյնպիսի պատուամեծար պատգամաւորաց ժողովով ընտրեց Ազգն և Եկեղեցին ի Հայրապետութիւն ամենայն Հայոց Սրբազան Պատրիարքն Կ. Պօլսոյ Տէր Ներսէս վեցերորդ, որոյ մէջ արդարեւ տեսնուած էին Աստուածաձիր եւ գրաւատելի բարեմասնութիւնք, բայց աւա՜ղ, զի անակնկալ օրհասական մահն զրկեց զմեզ ազգասիրին վայելելուց նորա Հայրապետական շնորհն ։

Ի կնիք բանիս աղաչեսցուք ի բոլոր սրտէ զամենակարողն

*Աստուած, դարձեալ յարուցէ մեր բարձրաստիճան Եղբայրներից նոր մարգարէ, առաջնորդ և հովիւ բարի՝ առաջնորդել, հովուել և խնամել զԱզգ և զԵկեղեցի ճշմարտութեամբ և արդարութեամբ։ Աղաչեսցուք զՍուրբ Հոգին Աստուած, ազդել և ներշնչել ի մեզ հոգի զգաստութեան և զգօնութեան, և ընդ մարգարէին ձայնակցելով ասասցուք. Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա ի մեզ Տէ՛ր, և զգործս ձեռաց մերոց յաջողեա՛ մեզ։ Լուիցէ Տէր աղաչանաց մերոց, Ամէն։*

*Տեղակալ Առենապետի Սինոդի Սրբոյ Էջմիածնի*

**ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

Ի Ս. *Էջմիածին*
*ի* 20 *Ապրիլ* 1885 *Ապրիլ*

*Դ. — Ս. Էջմիածնի պաշտօնական Օրագիրն* Արարատ *այսպէս կը պատկերացնէ Համազգային Ժողովոյ ընտրութեան արդեանց նկարագիրն։*

«Բացուեցին Տաճարի դռները. Եկեղեցու շուրջը խռնուած բազմութիւնը շրջապատեց Եկեղեցու գաւիթը եւ ճնշող անձկութեամբ սպասում էր լսել ընտրեալի անունը. Թերթիկների վերայ գրուած քուէարկելեաց ցանկը ստացած քուէներով ժողովրդից ոմանք ստացան պատգամաւորներից եւ հնչուեց միաձայն ընտրուած Մելքիսեդեկի անունը. ամբողջ ժողովուրդը իբրեւ մի մարդ միաձայն սկսեց կեցցէ աղաղակել, եւ գլխարկները վեր բարձրացրած աւետում էին միմեանց ցանկալի անձի ընտրութիւնը. կեցցէների հուսանքի միջից պատգամաւորները գնացին դէպ ի Վեհարան, իսկ ժողովուրդը անսահման ուրախութեամբ հրճվում էր:

Ամբողջ գեշերը Վաղարշապատում ժողովրդական խնջոյք էր, տեղական նուագածութեամբ, եւ ամենայն տեղ հնծ էր ՄԵԼՔԻՍԵԴԵԿ անուամբ ։ Ո՞վ է ՄԵԼՔԻՍԵԴԵԿ, որի անունը ահա երկու ամբողջ տարի խօսվում է որպէս արժանի ոք կաթողիկոսութեան ։ ՄԵԼՔԻՍԵԴԵԿ իւր ստացած կրթութեամբ, իւր վարած պաշտօններով եւ իւր գրական վաստակներով էր արժանաւորներից արժանաւորագոյնը ։

Նորին Սրբազնութիւնն իւր կրթութեամբ եւ ծագմամբ մեզ հայրենակից է եւ լաւ ճանաչում է մեր երկիրն ու ժողովուրդը ։ Նա երկար ժամանակ Տաճկաստանում լինելով եւ վարելով զանազան պաշտօններ ճանաչում է Տաճկահայոց ։ Նա Երուսաղէմի Ս. Յակովբեանց վանքում ընդունելով կուսակրօնութեան կոչումն եւ բաւական ժամանակ այն տեղ կենալով՝ ճանաչում է եւ գիտէ վանական կարգ ու կանոնները. ահա՝ բարեմասնութիւններ, որ ամեն մարդու ծիրք եւ բաժին չեն» ։

*Ե. — Համազգային Ընտրողական Ժողովոյ Պատգամաւորք հետեւեալ շնորհակալեաց գիրն կը մատուցանեն Ս. Նախագահին ։*

*Գերըզգօ՛ն Տէր.*

*Ընտրութեամբ արժանաւոր ԺԱՌԱՆԳԻ Աթոռոյ Հայրապետութեան Ազգիս՝ զպաշտօն պատգամաւորութեան մերոյ յաւարտ հանեալ՝ գամք ընդ ոգջոյն հրաժեշտի մերոյ և ընդ հայցուածս հայրական օրհնութեան Ձերոյ հաւաստել Ամենապատիւ Սրբազան Տեառնդ զշնորհակալութիւնս մեր սրտագին վասն խո-*

հական ընկալւորութեան, որով առաջնորդեցիք Համազգային ժողովոյն ի բարեյաջող ելս, ըստ կրկնակի յուսոյ և բաղձանաց, որոց Նուիրական է աւանդ հայրենատուր ի պաշտպանութիւն միութեան ընդ եղբարս մեր բնակեալս ի Տաճկաստան և յապահովութիւն խաղաղութեան, որում [illegible] [illegible]. մանաւանդ թէ ի պաշտպանութիւն իրաւասութեան Հայրապետի ամենայն Հայոց [illegible] խնդրէր՝ որք դարուց ի դարս Նուիրագործեալ կանոնական իրաւամբ Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ, սեպհական են միայն իւրում Մայրագոյն Բարձր իշխանութեան և գրաւական բարոյական յառաջադիմութեան ազգայ սերնդոց Ազգիս՝ հաւատարիմ հպատակութեամբն և սիրովն առ Մայրն իւր գորովալի առ Եկեղեցին Հայաստանեայց, տան մեզ գեղեցիկ ապացոյց վստահութեան թէ՝ արդարև բուռն են ի Ձեզ իղձք բազմադիմի բարեմասնութեան, զոր ապացուցիք գործովք իբրև հաւատարիմ և հարազատ պաշտօնեայ Հայաստանեայցս սուրբ եկեղեցւոյ:

Ցուցալ յուսամք համարձակօրէն, Գերզգօ՛ն Տէր, զի բարեձիր խոհականութեամբ և հաստատամտութեամբ Ձերով այսուհետև ևս զզէն վարչութեան գործոց մեծի Սրբոյ Աթոռոյս մերոյ պահպանել անսասան, հասանելոց էք ԸՆՏՐԵԱԼ ՀԱՅՐԱՊԵՏԻ մերոյ, առաւել ևս երախտագիտութեան պարտաւորս առնելով որպէս զմեզ նոյն և զժողովուրդն համօրէն, որոց ամենեցուն փափագ մեծ է տեսանել զԱթոռն Սուրբ վայելչապէս պայծառացեալ ի ձնծութիւն սրտից հարազատ զաւակաց իւրոց:

ի Ս. Էջմիածին
ի 22 Ապրիլի 1885 ամի — ԱՆՈՒԱՆՔ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱՑ

Ջ. — Կաթողիկոսական ընտրութենէն զկնի այսպէս կը հեռագրեն Նախագահն Ազգային Ժողովոյ եւ Պատգամաւորք.

Ի Զմիւռնիա, Ամենապատիւ բարձր Սրբազան Մելքիսեդեկ Արքեպիսկոպոս:.

Համազգային Գերագոյն ժողովն միաձայնութեամբ ընտրելով

*այսօր զՁեզ ի Գահ Հայրապետութեան, փութայ շնորհաւորել ըզ ցանկալի ընտրութիւն Ձեր, փափագելով տեսանել զՁեզ ի գիրկ Մօրս մեր լուսոյ կաթուղիկէ Էջմիածնի։*

*Նախագահ ժողովոյն և Տեղապահ*

ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Ի Կ. Պօլիս, Պատրիարքարան Հայոց

*Համազգային ժողովս Էջմիածնի միաձայնութեամբ ընտրեաց ի Գահ Հայրապետութեան զՏէր Տ. Մելքիսեդեկ Արքեպիսկոպոսն Զմիւռնիոյ. փութամ ծանուցանել Ազգային ժողովոյդ զյաջող ընտրութենէս։*

*Նախագահ ժողովոյն և Տեղապահ*

ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Ս. Էջմիածին, 4 Մայիս (Ն. Տ.) 1885

*Բարձր Սրբազնութեան Տեառն Մելքիսեդեկի Արքեպիսկոպոսի, ի Զմիւռնիա.*

*Աշխարհական պատգամաւորքն Ռուսիոյ, Պարսկաստանի եւ Հնդկաստանի ներկայք միաձայն ընտրութեան Ձեր Սրբազնութեանն ի Գահ Հայրապետական Աթոռին ամենայն Հայոց, որոց բերկրութեամբ, խոնարհ որդիական ջերմեռանդութեամբ մատչելով ի համբոյր սուրբ Աջին Ձերոյ՝ շնորհաւորեն Ձեր ցանկալի ընտրութիւն, տածելով յոյս փութապէս տեսանել զՁեզ բազմած Ս. Լուսաւորչի Աթոռին վերայ։*

Իսահակ Մանուկեան Ալաճալեանց՝ Նոր Նախիջեւանի եւ Բեսարաբիոյ։
Ներսէս Ասլանեան Աթաբէգեանց՝ Ղարաբաղու։
Աղեքսանդր Ղազազեան՝ Կարուց։
Սիմէօն Աթանասեան՝ Երեւանայ։

Արգար Յովհաննիսեան՝ Տփխեաց.
Համբարձում Առաքելեան՝ Ատրպատականի.
Յովհաննէս Սարգսեան՝ Աստրախանի.
Աղեքսանդր Լալայեանց՝ Շամախւոյ։

*Ի գիտութիւն արժան կը դատիմք դնել ընտրութեան մասնակցող Եկեղեցականաց անուններն, յորոց չատերէն յատուկ հեռագիր եւ ընդունուած է ի շնորհաւորութիւն Կաթողիկոսութեան։*

**Անդամք Սինոդի**

| | |
|---|---|
| *Տեղապահ Ատենապետի Սինոդի* | Մկրտիչ Արքեպիսկոպոս |
| | Մեսրոպ եպիսկոպոս Սմբատեան |
| *Անդամք* | Յովակիմ » Տ. Գրիգորեան |
| | Երեմիա » Գալստեան |
| | Ներսէս » Խուդավերդեան |
| | Սամբրէ վրդպետ. Սանասարեան |

**Պատգամաւորք Միաբանութեան Մայր Աթոռոյ**

Սերովբէ եպիսկոպոս Արարատեան
Գրիգոր » Աղափիրեան
Յովհաննէս » Տէր Յարութիւնեան
Գրիգոր Ծ. վարդապետ Տ. Ստեփաննոսեան
Արիստակէս » Դաւթեան
Յովակիմ » Ղամէքեան

**Վիճակաւորք Ռուսաստանեայց**

Գրիգոր Արքեպիսկոպոս Սագինեան՝ կառավարիչ Ղարաբաղի

Ի կողմանէ վիճակաւորին Ատրպատականի՝ Մըկրրտիչ Արքեպիսկոպոս

Ի կողմանէ վիճակաւորին Պարսկաստանի եւ Հընդկաստանի՝ Սերովբէ եպիսկոպոս Արարատեան

Թադէոս Եպիսկոպոս Ջիւնական, կառավարիչ Շամախւոյ

Սուքիաս Եպիսկոպոս Պարզեան՝ կառավարիչ Աստրախանի

Գրիգոր Եպիսկոպոս Աղուանեանց՝ կառավարիչ Կարուց

Արիստակէս Եպիսկոպոս Սեդրաքեան՝ վիճակաւոր Տփխեաց

Գէորգ Եպիսկոպոս Սուրէնեան՝ Փոխ. Թեմակալ Երեւանայ

Ի կողմանէ վիճակաւորին Բեսարաբիոյ եւ Նոր Նախիջեւանայ՝ Կարապետ Վարդապետ Տ. Գալստեան։

*Կը թողումք մի առ մի յառաջ բերել այն բազմաթիւ հեռագրերն, որք ուղղուած են աշխարհիս ամեն կողմերէն, ո՛ւր որ Հայ կը գտնուի, և որք կը կրեն ստորագրութիւններ Սինօդականաց, Առաջնորդաց, Ժողովոց, Քաղաքապետաց, արական և իգական սեռի Ընկերութեանց, Տեսչութեանց, Քահանայական և Ուսուցչական դասուց, և առհասարակ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ ամեն կարգի և աստիճանի զաւակաց։ Սոյն հեռագրերն մեր Ազգի համոզման և խղճի ինքնաբուղխ* ՎԿԱՅՈՒԹԻՒՆ *է, արտաքոյ որոյ ամեն ինչ պատրանք է կամ բռնութիւն։*

*Ը. — Կ. Պօլսոյ Ս. Պատրիարքն կ՚ողջունէ Ազգ.*

Երեսփոխանութիւնն ի միջի այլոց հետեւեալ խօսքերով.

Դարձեալ ուրախութեամբ կը ծանուցանեմ թէ՝ Ամենայն Հայոց կաթողիկոսական ընտրութիւնը կատարուեցաւ ի 21 Ապրիլի ի Ս. Էջմիածին, և միաձայն քուէով Համազգային Ընտրողական ժողովոյն՝ ընտրուեցաւ Ջմիւռնիոյ Առաջնորդն Տ. Մելքիսեդեկ Արքեպիսկոպոս։ Եւ Վարչութեան որոշմամբ թէ՝ առ Նորին Սրբազնութիւնն և թէ՝ առ Նախագահն Ընտրողական ժողովոյն շնորհաւորական հեռագրեր ուղղեցինք։

Իսկ Երեսփոխանութիւնն իւր Ուղերձին մէջ սոյն խօսքերն կ՚ուղղէ առ Ս. Պատրիարքն.

Նմանապէս խորին գոհունակութեամբ իմացաւ Ամենայն Հայոց կաթողիկոսի ընտրութիւնն։ Քաջայոյս է Երեսփոխանութիւնս՝ թէ Ազգին միաձայն Ընտրեալն՝ Ամեն. Տ. Մելքիսեդեկ Ս. Արքեպիսկոպոս պիտի բազմի ընդ հուպ ի Մայր-Աթոռն Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ։

Թ. Երբ լուր կը հասնի, որ Մակար Սրբազանն կաթողիկոս անուանուած է Ռուսիոյ Ինքնակալէն, իսկոյն Ազգային Ժողով կը գումարուի և խնդիրն Յանձնաժողովոյ քննութեան կ՚ենթարկուի։

Յանձնաժողովն երկու Տեղեկագիր կը պատրաստէ, որոց պարունակութեան մէջ մասամբ համանմանութիւն կայ, բայց ո՛չ եզրակացութեան։ Յանձնաժողովոյ 13 անդամներէն 8ն կըստորագրեն մի Տեղեկագիրն, որ կը կոչուի Մեծամասնութեան Տեղեկագիր, 3ն կըստորագրեն միւսն, որ կը կոչուի Փոքրամասնութեան Տեղեկագիր, երկու անդամք եւս ձեռնպահ

կը մնան և չ՛են ստորագրեր ո՛չ մի Տեղեկագիրն ։

Մեծամասնութեան Տեղեկագիրն նախ կը հաստատէ թէ . « կարելի չ՛է Տ . Մակար Արքեպիսկոպոսի ընտրութիւնն՝ արդի վիճակին մէջ՝ համազգական համարել , ու Նորին Սրբազնութեան կաթողիկոսացումն Եկեղեցւոյ օրինաց կատարելապէս համաձայն և Մայր Աթոռոյ Գահակալին ընդհանրական հանգամանացն համապատասխան նկատել . վասն զի կրօնականք և աշխարհականք՝ ի միասին կը կազմեն Հայոց Ազգն ու Եկեղեցին , վասն զի առաքելական Յաջորդն Սրբոցն Թադէի և Բարթուղիմեայ ընդհանրական Գլուխն է Հայ Եկեղեցւոյն՝ որ ի Թուրքիա , Ռուսիա , Պարսկաստան , Հնդկաստան և ի սփիւռս աշխարհի , մինչ Տ . Մակար Արքեպիսկոպոսի ընտրութեան մէջ և ո՛չ մէկ երկրի աշխարհականաց ձայնն ու մասնակցութիւնն կայ » ։ Բայց ապա կը գիջանի « Համակերպիլ բացառաբար Մակար Արքեպիսկոպոսի կաթողիկոսացման , ապագային օրինակ չը համարուելու պայմանաւ ։ »

Տեղեկագիրն կ՛առաջարկէ նաև Մակար Սրբազանի ուշադրութեան յանձնել 1883ին Ազգային ժողովէն ծրագրեալ Տեղեկագիրն , և ի հակառակ դէպս վերապահել ժողովոյ ազատութիւնն, եթէ չ՛փրկուին Թուրքիոյ Հայերն ապագային մէջ յուսախաբ գործելու դժբաղդ հարկէն ։ Բայց ի հարկէ ո՛չ այլ ինչ է այս , եթէ ո՛չ յուսախաբութեան յուսախաբութիւն ։

Երկու Տեղեկագրերն ևս Ազգային ժողովոյ կը մատուցուին 1885 թուականի Նոյեմ . 1ի նստին մէջ ։ Երեսփոխանաց թիւն 70էն աւելի կը լինի ։ 42 Երես-

*փոխանք կը համակերպին Մեծամասնութեան Տեղեկագրին, 16ն կ'ընդունին Փոքրամասնութեան Տեղեկագիրն. իսկ մնացեալքն թէեւ համաձայն վերջնոյն՝ կը հեռանան Ժողովէն առանց քուէարկութեան մասնակցելու։*

*Զարմանալի է, որ Ազգ. Ժողովոյ նստին օրուան ամսաթիւն կը կրէ Մակար Սրբազանի օծման Էջմիածնական Ծանուցագիրն, որ հրատարակուած է* Արեւելքի *Նոյ. 2 թուոյն մէջ։ Երեւի թէ նոյն իսկ Ժողովոյ* բացառական *որոշումէն շատ առաջ ամէն ինչ կարգադրուած է Պատրիարքի գաղտնի խոստման հաստատուն հիման վրայ եւ Ժողովն լոկ ձեւակերպութիւն միայն եղած է։*

*Փոքրամասնութեան Տեղեկագիրն բացէ ի բաց կը մերժէ օտարոտի կաթողիկոսացումն՝ իւր հետեւեալ նշանաւոր պարունակութեամբ։*

Տեա՛րք Երեսփոխանք։

Ստորագրեալ անդամքս կաթողիկոսական խորհրդարանական Ցանձնաժողովոյ կոչուեցանք ի պաշտօն՝ ըստ հետեւեալ հրաւիրաւիրագրի Ամեն. Ս. Պատրիարք Հօր։

Ազգային Երեսփոխանական Ժողովս Սեպտ. 20ի իւր վերջին գումարման մէջ լսելով Ս. Էջմիածնի Սինոդին 1885 Օգոստոս 24 թուականաւ կաթողիկոսական ընտրութեան եւ Ամեն. Տ. Մակար Ս. Արքեպիսկոպոսի Վեհ. Զարէն հաստատման տեղեկագիրն, եւ նկատելով որ կաթողիկոսական ընտրութեան այս անակնկալ ելից առջեւ իւր պարտաւորութիւնն էր — Ա. Պաշտպան կանգնիլ Հայաստանեայց Եկեղեցւոյ իրաւանց. Բ. Պահպանել Եկեղեցւոյ միութիւնն եւ Գ. Փրկել Ազգ. Ժողովոյ արժանապատուութիւնն, որոնց խնդրոյն վրայ ո՛ եւ է վիճաբանութիւն ընելէ առաջ՝ Եկեղեցական եւ աշխարհական երկուական երեսփոխաններէ Ցանձնա-

ժողով մը կազմել, որ պաշտօն ունենայ Մեր Նախագահութեան ներքեւ և ընդ տեսչութեամբ Ազգային Ժողովոյ առաջին Ատենապետի՝ այս ծանրակշիռ խնդրոյն պարագայներն քննել մանրամասնօրէն, և Եկեղեցւոյ շահուց համաձայն եզրակացութեան մը յանգելով, ենթարկել զայն մասնաւոր տեղեկագրով մը Ազգ. Ժողովոյ հաւանութեան։

Ըստ այսմ պաշտօնագրի, Սեպտ. 25 Չորեքշաբթի օրէն սկսեալ, երկիցս 'ի շաբաթու ի նիստ գումարուելով երկարատեւ խորհրդակցութեամբ պարապեցանք ի քննութիւն այս ծանրակշիռ խնդրոյն, որպէս զի ըստ յանձնարարութեան Պատ. Ժողովոյդ, Եկեղեցւոյ շահուց համաձայն եզրակացութեան մը յանգելով տեղեկագրեմք զայն առ Ազգային Ժողովդ։

Հակառակ մեր անդադար աշխատութեանց՝ կարելի չեղաւ մեզ պայմանեալ ժամանակին մէջ աւարտել մեր աշխատութիւնն, որոյ մասին Պատկ. Ժողովոյդ ներողամտութիւնն կը խնդրեմք։

Թէպէտ և ամեն ջանք ի գործ դրուեցաւ, այլ անհնար եղաւ Յանձնաժողովոյ անդամոց ընդհանուր համաձայնութիւնն՝ խնդրոյն մի քանի էական մասանց՝ և հետեւաբար եզրակացութեան վրայ։

Յանձնաժողովոյ անդամք, գրեթէ միաձայնութեամբ, թէ և այլ և այլ տեսակէտներով, ընդունեցին թէ՝ Տ. Մակար Սրբազանի ընտրութիւնն ուղղայն չէ. զի Ազգին ընտրեալ կաթողիկոսն է Տ. Մելքիսեդեկ Սրբազան։

Ընդունեցին թէ՝ Տ. Մակար Սրբազանի ընտրութեան մէջ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրէնքն ճշդիւ չէ գործադրուած. զի Հայ Ազգի աշխարհական դասն, որ ի Ռուսիա, ի Թուրքիա, ի Պարսկաստան և ի Հնդկաստան, բնաւ մասնակցած չէ այդ ընտրութեան։

Ընդունեցին թէ՝ Տ. Մակար Սրբազանի ընտրութիւնն բոլորովին հակառակ է կաթողիկոսի ընդհանրական հանգամանաց, զի այդ հանգամանօք, այսինքն համօրէն Ազգին, եկեղեցականաց և աշխարհականաց [illegible] և [illegible] ընտրեալն է Տ. Մելքիսեդեկ Սրբազան։

Իսկ երբ խնդիր եղաւ Տ. Մակար Սրբազանի անձնաւորութիւնն, յայնժամ կարծիքներն բաժնուեցան. զի Նորին Սրբազ-

նութեան անձն անծանօթ էր մեզ, և Ազգ. Երեսփոխանական ժողովդ՝ հեռանալով ծանօթութեան, զոր ունէին մեր Ռուսիացի ազգայինք, պատշաճ չը դատեց դնել զանուն Ն. Սրբազնութեան ի շարս կաթողիկոսական երից ընտրելեաց. այսպէս նաև Համազգային ժողովոյ աշխարհական պատգամաւորք ո՛չ մի քուէ տուին Տ. Մակար Սրբազանի ընտրութեան, զոր կը հաստատէր կաթողիկոսական փոխ-Տեղակալ և պատուիրակ Թուրքիոյ Հայոց Տ. Մկրտիչ Արքեպիսկոպոս Բաքամեանց՝ իւր պաշտօնական տեղեկագրով: Բայց ըստ որում Տ. Մակար Սրբազան ընդունեց Ռուսիոյ Վեհ. կայսեր ընտրութիւնն, որ չէր ազգային և համաձայն Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրինաց և աւանդութեանց, և ըստ որում ցոյց տուաւ թէ պետական կամաց առաւել կը յօժարի անսալ և ո՛չ իւր առաքելական կոչման և ուխտին ի պահպանութիւն օրինաց և աւանդութեանց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ, որ կաթողիկոսի մը սրբազան և սեպուհ պարտաւորութիւնն է. ուստի իրաւամբ պատճառ տուած եղաւ տարակուսելու իւր անձնական արժանեաց վրայ:

Դարձեալ անհամաձայն գտնուեցանք ի մասին թէ Ռուսիոյ Վեհ. կայսրն իւր օրինական սահմանին մէջ գտնուա՞ծ է ընտրելով զՏ. Մակար Սրբազան ի կաթողիկոսութիւն Ամենայն Հայոց. —Ըստ որում Պալաժէնիա անուն կարգադրութիւնն յԵրեսփոխանական ժողովոյ Թուրքիոյ Հայոց իբրև անընդունելի հռչակեալ և մերժեալ է, յամին 1868, «իբր Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ կարգացն, կանոնաց և հնաւանդ սովորութեանց ընդդէմ հակառակ և Հայրապետական իշխանութեան և իրաւասութեան ամենայնիւ փոփոխելով և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ մէջ օտարամուտ կարգադրութիւն», որպէս նաև ընդ բողոքով արկեալ յամենայն Սրբազան կաթողիկոսաց. ըստ որում, անցեալ և այս տարի, Ներկայ Երեսփոխանութիւնն ևս 1866ի որոշումն վերահաստատեց և առանց հեռանալու Պալաժէնիոյ տրամադրութեանց, մասնակցեցաւ կաթողիկոսական ընտրութեան. — հետևաբար Ռուսիոյ Վեհ. Կայսեր այդ ընտրութիւնն՝ Թուրքիոյ Հայոցս համար չէ օրինաւոր, այլ և է անընդունելի: Այդ ընտրութեան ընդունելութիւնն կը նշանակէ ընդունիլ զՊալաժէնիան՝ իւր բոլոր վնասակար յօդուածներովն և ջնջել յառաջադոյն կատարուած բողոքներն

ու մերժումներն , մինչ չ'ընդունիլն է գործնական բողոք , որ կը վերահաստատէ նախորդ բողոքներն ։

Նոյնպէս անհամաձայն գտնուեցանք ի մասին՝ թէ Տ. Մակար Սրբազանի կաթողիկոսացումն չ'ընդունիլ վնասաբե՞ր է Եկեղեցւոյ միութեան ։ — Ըստ որում հանգուցեալ Տ. Գէորգ Կաթողիկոսի անուան յիշատակութեան յետ այսորիկ եւ շարունակումն անբաժան կը պահէ զմեզ Ս. Էջմիածնի Մայր Աթոռէն եւ կը պահպանէ ազգային - եկեղեցական միութիւնն . տեղի չ'կայ երկնչելու այդ միութեան խզումէն , որպէս հաւատացին մեր պաշտօնակից Սրբազան Եպիսկոպոսունք ։

Բաց այս երեք էական կէտերէն , յորս անհամաձայն գտնուեցանք մեր միւս ընկերաց հետ , նկատողութեան առինք նաեւ ձեռնհասութեան խնդիրն ։ Քանզի ի՛նչ որ Ազգային չէ , ինչ որ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրինաց և աւանդութեանց համաձայն չէ , Թուրքիոյ Հայոց Երեսփոխանական ժողովն ձեռնհաս է մերժելու, այլ անձեռնհաս է ընդունելու . և զի Սահմանադրութիւնն բացորոշ կը տրամադրէ , Յօդ. 28, Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնն և աւանդութիւններն անխախտ պահել, մանաւանդ Ս. Պատրիարք Հայրն ուխտեալ է անթերի գործադրել զԱզգային Սահմանադրութիւն , Յօդ. 4, 8 ։

Ուստի Պատկառելի ժողովդ հաւանութեան կ'առաջարկեմք հետեւեալ բանաձեւն .

Թուրքիոյ Հայոց Երեսփոխանական ժողովն

Նկատելով թէ՝ Պեսարապիոյ առաջնորդ Տ. Մակար Սրբազանի ընտրութիւնն չէ ազգային , այլ մանաւանդ բռնաբարումն է ազգային իրաւանց , հանդէպ ազգային ընտրութեան , որ կատարեցաւ յանձին Տ. Մելքիսեդեկ Սրբազանի ի կաթողիկոսութիւն Ամենայն Հայոց ։

Նկատելով թէ Տ. Մակար Սրբազանի ընտրութիւնն Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրինաց և աւանդութեանց չէ համաձայն , և Ամենայն Հայոց կաթողիկոսի ընդհանրական հանգամանաց հակառակ է բոլորովին . զի այդ ազգային հանգամանօք ընտրեալ օրինաւոր կաթողիկոսն է Տ. Մելքիսեդեկ Սրբազան ։

Նկատելով թէ Տ Մակար Սրբազան , ըստ իւրում առաքելական կոչման և ուխտի , փոխանակ պատկառ կալու Ազգին կա-

մաց և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրինաց և աւանդութեանց՝ օտար իշխանաւորի պետական անօրէնութեան համակերպիլ նախ-ընտրած է, որով Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ օրինաց և ա-ւանդութեանց պաշտպանման մասին ո՛չ ևս կարէ լինիլ վստահելի։

Նկատելով թէ Տ. Մակար Արքազանի կաթողիկոսական ընտ-րութիւն կատարուած է Համաձայն Պալաժէնիա անուն Ռուսական կարգադրութեան, որոյ վնասակար յօդուածներն ի սկզբանէ անտի մերժուած են յամենայն Արքազան կաթողիկոսաց, և ի մասնաւորի՝ երկիցս խոտոր անընդունելի հռչակեալ և ընդ բողոքով արկեալ են յԵրեսփոխանական ժողովոյ Հայոց Թուրքիոյ, « Իբրև Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ կարգաց, կանոնաց և հնաւանդ սովորութեանց գլխովին հակառակ, և Հայրապետական իշխանու-թեան և իրաւասութեան ամենայնի ճնշող, և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ մէջ օտարամուտ կարգադրութիւն, զոր վերստին մերժած կը լինինք, համաձայն շահուց Ս. Եկեղեցւոյ, մերժելով զկաթողիկոսական ընտրութիւն Տ. Մակար Արքազանի։

Նկատելով թէ Թուրքիոյ Հայոց Ազգային Սահմանադրու-թիւնն բացորոշ կը տրամադրէ անխախտ պահել Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ դաւանութիւնն ու աւանդութիւններն.

Կ'որոշէ՝

Ա. — Թէ ո՛չ կարէ ընդունիլ զկաթողիկոսական ընտրու-թիւն Տ. Մակար Արքազանի, զի Ազգին ընտրեալ կաթողիկոսն է Տ. Մելքիսեդեկ սրբազան.

Բ. — Թէ հարկ է շարունակել զյիշատակութիւն անուան Տ. Գէորգայ հանգուցեալ կաթողիկոսի։

25 Հոկտ. 1885 | Անդամք կաթող. Ցանձնաժողովոյ
ի Կալաթա | Տեղեկարեր

Ց. ԳՈՒՐԳԷՆ

Ս. Պ. Պ. ՓԱՓԱԶԵԱՆ   Մ. ԱՂԱԲԷԳԵԱՆ



# ԿՐԹԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ԴՊՐՈՑՔ ՀԱՅՈՑ Ի ՌՈՒՍԱՍՏԱՆ

*Կրօնական ազատութեան վրայ խօսելէն զկնի՝ պարտք կը համարիմք խօսիլ Կրթական Ազատութեան վրայ. քանզի մեր հայ եղբարց, ինչպէս Կրօնական, նոյնպէս և Կրթական Ազատութիւնն բռնաբարուած է ի Ռուսաստան։*

*Սարսափեցաւ ամեն Հայ, երբ լսեց, քանի մի տարի առաջ, թէ Հայոց դպրոցներն փակուած են Ռուս Կառավարութեան հրամանաւ։ Այս հրամանն այնքան ծանր էր, որքան միւս կողմէն մեծ էր ժողովրդեան սէրն ու եռանդն դպրոցաց համար։*

*Եւրոպայի և Ամերիկայի մէջ հանապազօր կրկնուող* ՈՒՍՈ՛ՒՄՆ, ՈՒՍՈ՛ՒՄՆ՝ *աղաղակներն արձագանք կը տային և կը կրկնուէին Ռուսաստանի մէջ։ Ռուս Կառավարութիւնն տակաւ առ տակաւ կը բազմացնէր Պետական վարժարանաց թիւն։ Ռուսիոյ Հայք եւս* 40-50 *տարիներէ ի վեր, իրենց ունեցած դպրոցներն կանոնաւորելով հանդերձ, սկսած էին ամեն հայաբնակ քաղաքներու և գիւղերու մէջ նորանոր դպրոցներ բանալ։ Շարժումն ընդհանուր էր, քանզի ամեն մարդ*

համոզուած էր թէ՝ նիւթական հացէն աւելի կարեւոր էր հոգեւոր հացն , բարոյական հացն , մտաւոր հացն – Լոյսն ու Գիտութիւն ։

Հայոց դպրոցներն , ի սկզբանէ անտի , Հայոց Հայրապետի անմիջական իշխանութեան ներքոյ էին և կը կառավարուէին ժողովրդէն ընտրուած և Հայրապետէն հաստատուած Հոգաբարձական ժողովներով , որոց Նախագահն էր իւրաքանչիւր քաղաքի կամ գիւղի մէջ գտնուած՝ տեղական Առաջնորդն , կամ Յաջորդն կամ Երէցն ։ Բացի իւրաքանչիւր դպրոցի կամ դպրանոցի յատուկ Տեսչէն՝ կային նաև Թեմական Տեսուչներ՝ Ս. Էջմիածնի Կաթողիկոսէն հաստատուած ։

Այսպէս էր ահա՝ Հայոց ազգային Կրթական վիճակն ի Ռուսաստան՝ երբ հրաման ելաւ Ռուս Կառավարութենէն Հայոց բոլոր Կրթական հաստատութիւններն ենթարկել Պետական հսկողութեան և այս հրամանն ելաւ այն ժամանակ , երբ վախճանած էր Գէորգ Դ. Կաթողիկոսն, որ արդէն ի կենդանութեան պատասխանած էր Ռուս Կառավարութեան նմանօրինակ մի հրամանին ։ Հայք վրդովեցան և յուզեցան այս պետական հրամանին վրայ , քանզի այնպիսի մի հարուած էր , որ ուղղակի իրենց ազգային զգացմունքն ու պատիւն կը վիրաւորէր և իրենց ազգային էութիւնն կը վտանգէր ։ Հայք ապստամբած չ'էին , Հայոց դպրոցներն խաղաղութեան յարկեր էին միայն , ուր մանուկ սերունդն կը պատրաստուէր կրթուած հայ , բարեպաշտ Քրիստոնեայ և Հասարակութեան օգտակար անդամ լինելու ։ Հայոց վարժարաններն , իբր լոկ միջնակարգ և նախակրթական հաստատութիւններ , կա-

րող չէին բնաւ այն կասկածն իսկ յարուցանել, զոր Ռուս Կառավարութիւնն չարունակ կը տածէ Ռուսական Համալսարանաց նկատմամբ։ Հայոց վարժարաններն ժողովրդական պարզ հաստատութիւններ էին, յայտնի իրենց ծրագրով, յայտնի իրենց ընթացքով, յայտնի իրենց կրթական նպատակաւ։

Ահա այսպիսի մի յայտնի կացութեան դէմ Ռուս Կառավարութեան բռնած ընթացքն խորին վիշտ կը պատճառէր ժողովրդեան, որ պետական նոր հրամանին տակ, ազգային էութեան խորտակումն կը նշմարէր քան թէ որ և իցէ շահաւոր կարգադրութիւն։ Այս պատճառաւ Ժողովուրդն չկամեցաւ համակերպիլ այս սպառնական հրամանին, որ կը հարուածէր միանգամայն ժողովրդի հաւատարմութիւնն և անտեսութեան կը մտնէր Ռուսիոյ փառաց համար կատարած զոհողութիւններն։ Բայց ի՞նչ կարող էր առնել Հայ ժողովուրդն, քանի որ վարժարանաց վերին հսկողութիւն ու հոգածութիւնն Հայրապետական իրաւասութեան կը պատկանէր և Հայրապետն արդէն վախճանած էր։ Ռուս Կառավարութիւնն չ՚էր ուզեր սպասել նոր Հայրապետի ընտրութեան և կաճապարէր իւր հրամանն իրագործել Էջմիածնի Սինոդի կամ հոգեւոր Վարչութեան միջոցաւ։ Սինոդն չը կամեցաւ իւր վրայ առնուլ այս ծանր խնդրոյն պատասխանատուութիւն և առ այս հրաւէր կարդաց Ռուսիոյ Հայ Առաջնորդաց գալ գումարիլ յԷջմիածին և հնարից ելք գտնել պատասխանատուութենէ ազատուելու համար։ Ամեն Առաջնորդք փութացին յԷջմիածին բացի Բեսարաբիոյ և Նախիջեւանի Առաջնորդ

Մակար և Վրաստանի ու Իմէրէթի Առաջնորդ Արիստակէս Եպիսկոպոսներէն ։

Ս․ Էջմիածնի մէջ գումարուած սոյն ժողովն, որ կազմուած էր Սինոդականներէն և Թեմակալ առաջնորդներէն, յոյժ գովանի և օրինական կերպիւ վարուեցաւ, և անշուշտ Պատմութեան մէջ պիտի ունենայ իւր արժանի գնահատութիւնն ։

Ժողովն նշմարելով պետական Նոր առաջարկութեան ազգակործան հետեւանքն, և տեսնելով թէ՝ Թափուր է մանաւանդ Հայրապետական Աթոռն, բացէ ի բաց մերժեց Պետական Նոր հրամանի գործադրութիւնն, Թողլով խնդիրն Նոր Հայրապետի տնօրէնութեան, յուսալով անշուշտ, որ նա ինքն եւս պիտի մերժէ ըստ հիմնաւոր իրաւանց Հայրապետութեան, ինչպէս որ կերեւի իւր ժողովի մի պատասխանագրին մէջ, ուղղեալ առ Ռուս Կառավարութիւնն ։ (1)

Սակայն, ինչպէս յետոյ պիտի տեսնենք, ժողովոյ յոյսն, որ իրաւանց վրայ հիմնուած էր, ի դերեւ ելաւ, երբ Ազգի Ընտրեալն կամ իրաւանց Կաթողիկոսն չը բազմեցաւ Հայրապետական Աթոռոյն վրայ, այլ Ռուսիոյ Ինքնակալէն Կաթողիկոս անուանեալն Մակար, որ պիտի գար վրէժ լուծել Ազգէն, զինքն չընտրելուն համար, և պետական գործիք լինիլ պետական հրամաններն կատարելու համար ։

Ռուս Կառավարութիւնն տեսնելով Հայ ժողովրդի և հայ Հոգեւորականութեան դիմադրութիւնն իւր առաջարկն գործադրելու և Հայ վարժարաններն Պետական իշխանութեան ենթարկելու մասին, հրա-

---

[1] Տե՛ս ի Յաւելուածն Ա․

ման հանեց բոլոր վարժարաններն փակել։

Անհաւատալի կը թուէր այսպիսի մի հրաման, քանզի ո՛չ միայն ինքնին անմեղ էին աշակերտող տըղայք և աղջկունք, այլ և նոյն իսկ ծնողք յանցանք գործած չէին Տէրութեան դէմ, որ ասուէր թէ որդիք ծնողաց համար պատիժ կը կրեն։ Անհաւատալի կը թուէր այսպիսի մի հրաման, աշակերտք և աշակերտուհիք կը շարունակէին իրենց ուսմունքն և անհնարին էր, որ ժողովրդի մէջէն մի ձեռք յանդըգնէր փակել այն, ինչ որ հազարաւոր ձեռքերով բացուած էր։ Փակել դպրոցներն՝ կը նշանակէր փակել Հայու սիրտն, Հայու զգացումն, Հայու բերանն ու լեզուն, Հայու ներկայն ու ապագայն։

Էր երբեմն որ Ցաւկերտ հրաման կը հանէր փակել Եկեղեցիներն, բայց դպրոցներու փակման հրամանն աւելի սոսկալի էր․ քանզի եկեղեցիներն փակուած ժամանակ՝ Հայք անտառներն ու անձաւներն եկեղեցի կը դարձնէին և կ՚աղօթէին, և կամ, ըստ Եղիշէի. «Իւրաքանչիւր ոք յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահանայ, մարմինք իւրաքանչիւր սուրբ սեղան և հոգիք նոցուն պատարագ ընդունելի.» բայց ո՞ւր պիտի դիմէին, ո՞ւր պիտի ուսանէին պատանեակք և պատանեկուհիք, մանկունք և աղջկունք։ Սակայն ուր կարեկցութիւն չըկայ, անդ տրամաբանութիւն ևս չկայ, ուստի և Ռուս Կառավարութիւնն իւր գինուորներուն հրամայեց փակել Հայ վարժարաններն։

Կը շուարիմ, կը տատամսիմ վերստին պատկերել այն դառնաղէտ տեսարաններն. որք տեղի ունեցան

դպրոցաց փակման ժամանակ և որո՜ց սրտամլիկ նկարագիրն բազմիցս հրատարակուեցաւ պարբերական թերթերու մէջ ։

Տակաւին կը հնչեն ականջիս, կը դոչէր երբեմն Գրիգոր Նիւսացին, Բեթլէհէմի մանկանց կոտորածն նկարագրած ժամանակ, տակաւին կը հնչեն ականջիս մանկանց գոչումն ու աղաղակն ... Նոյնն կարող ենք կրկնել և մենք Ռուսաստանի Հայոց դըպրոցաց փակման համար, մանաւանդ որ Նիւսացին կը նկարագրէր դարեր անցնելէն զկնի՝ իսկ մերին տակաւին երեկեան է, և տակաւին իրարու հանդէպ են փակ դրունք և արտասուաթոր մանկունք։ Տակաւին լսելի կը լինին նոցա աղաղակներն ու հեծկլտանքներն, լալիւնն ու ողբումն ։ Տակաւին մեր աչաց առջեւ կը պատկերանայ այն սրտայոյզ և արտասուաշարժ տեսարանն՝ թէ ի՞նչպէս դրասեղաններուն և դասարանաց դռներուն կը փարէին աշակերտք ու աշակերտուհիք և չ'էին ուզեր բաժնուիլ դպրոցներէն ։ Տակաւին կը խռովեն մեր սիրան զինուորական սաստն ու սպառնալիքն, մատաղ տղայոց ու աղջկանց նուաղումն ու թաւալումն ։

Չկայ աշխարհի մէջ, պատմութեան մէջ, կրթական ապաստանարաններն փակելէ աւելի սոսկալի հալածանք և սակայն Հայոց դպրոցներն փակուեցան Ռուս Կառավարութեան հրամանաւ, Ռուս զինուորաց ձեռքով ։

Փակուած էին ահա՛ Հայոց վարժարաններն, երբ Կաթողիկոսի ընտրութիւնն կատարուեցաւ, և երբ Ռուս կառավարութիւնն մեր տեղ (որ համօրէն Ազ-

*գէն ընտրուած էինք ի վերայ հիման Առաջելական և Ազգային դարաւոր իրաւանց) Կաթողիկոս անուանեց զՄակար Արքեպիսկոպոսն Բեսարաբիոյ և Նախիջեւանի ։ Վարժարանաց փակման առթիւ արդէն բեկուած էր Ազգին սիրտն , և ահա Եկեղեցւոյ իրաւանց բռնաբարումն ևս յաւել ցաւս՝ ի վերայ ցաւոց ։ Սակայն գտնուեցան մարդիկ , որոնք Ազգի վիշտն սփոփելու և Մակարի Կաթողիկոսացման դէմ գրգռուած ազգային յուզումն մեղմելու համար՝ ելան պատրանքներ հրատարակելու թէ՝ Հայ վարժարանաց խնդիրն լաւ վախճան կարող է ունենալ քանի որ Մակարն Ռուս Կառավարութեան սիրելին է և անուանեալն ։ Վարժարաններն արդէն փակուած էին . այս պատրանաց նպատակն էր Կաթողիկոսական խնդիրն ևս փակել ։ Սակայն Հայ ազգի խոհուն և զգայուն մասն արդէն իրազեկ էր և գիտէր ընդհակառակն թէ Մակարի կաթողիկոսացումն մի դաւադիր գրաւական էր Հայ վարժարաններն Ռուս Կառավարութեան յանձնուելուն կամ ճիշդն ասել Հայութեան համար իսպառ փակուելուն ։*

*. Շատ չ՚անցաւ և ահա՛ իրականացան այս ամենատխուր կանխատեսութիւններն և Մակարի կաթողիկոսացման ծմբկահար ախոյեաններն իսկ ափ ի բերան եղան կատարուած իրողութեան առջեւ ։*

Ա. — *Արական և իգական սեռի միջնակարգ վարժարաններն իսպառ փակուած [illegible]ացին և Նոր* ծրագրով , *Վեհ. Մակարի ստորագրութեամբ և Ռուս Կառավարութեան կարգադրութեամբ, բացուեցան* միադասեան (*միակարգ*) *և* երկդասեան (*երկկարգ*) *ծխա-*

կան Նախակրթարաններ կամ ծաղկոցներ, որոնք ո՛չ մի կապ չ'ունին փակուած վարժարանաց հետ։

Բ. — Սոյն ծխական աննշան կրթարաններն անգամ Ռուս կառավարութեան հսկողութեան ենթարկեցան, մինչդեռ բուն վարժարանք փակուեցան այն պատճառաւ, որ ժողովուրդն կամեցաւ Կաթողիկոսի պնմիջական իրաւասութեան ներքոյ պահպանել, ինչպէս որ էին ի սկզբանէ անտի Հայ դպրոցներն։

Գ. — Թէև Էջմիածնի Ճեմարանն և մի քանի Թեմական դպրոցներ իրենց գոյութիւնն պահպանեցին, բայց անկախ չ'են ինչպէս առաջ, և վճռուած է, որ նոքա ևս հանգոյն ծխականաց պիտի ենթարկին պետական Տեսչութեան և բոլոր կրթական պաշտօնեայք պիտի կոչուին կամ կ'արտաքսուին Ռուս կառավարութեան ընդհանուր Տեսչութեան միջոցաւ. իսկ օտար հպատակ մի Հայ թէ և բազմահմուտ՝ իրաւունք չ'ունի այսուհետեւ ուսուցանելու Հայ Թեմական կամ ծխական վարժարանաց մէջ։

Դ. — Պետական դպրոցներէն բարձաւ հայերէն լեզուի և Կրօնագիտութեան դասախօսութիւնքն։

Ահա՛ այսպէս դիւրութեամբ լուծուեցաւ Հայ վարժարանաց կենսական խնդիրն ի վնաս Հայութեան Մակարի Կաթողիկոսացման շնորհիւ և Մակարի ձեռամբ։ Միադասեան եւ Երկդասեան ծխական կրթարանաց բացու[illegible] մի պատրուակ եղաւ բուն կրթական էական խնդիրն մեռցնելու։ Եւ արդէն սոյն Նախակրրթարանք ստեղծուած են աւելի Ռուս Կառավարութեան նպատակին ծառայելու քան թէ Հայ ազ-

դութեան, մանաւանդ որ նշանակութիւն իսկ չունին Հայոց համար քանի որ չկան երեքդասեան և մինչեւ եօթն դասեան վարժարաններն, և եթէ յիշեալ Նախակրթարաններէն ելած մանկունք կամենան յառաջ երթալ, պիտի պարտաւորին պետական դպրոցներն մտնել։ Հետեւապէս Հայ ծխական Նախակրթարաններն ո՛չ այլ ինչ են, եթէ ո՛չ պատուանդաններ Ռուսական դպրոցաց (1)։

Ռուսաստանի Հայք և Էջմիածնի Թեմական Առաջնորդաց ժողովն շատ բնական և օրինական ճանապարհաւ վարուեցան, երբ վարժարանաց խնդիրն Կաթողիկոսի ընտրութեան թողուցին. բայց ո՞վ կարող էր գուշակել թէ Ռուս Կառավարութիւնն պիտի զիջանի Ազգի Ընտրեալն թողուլ և այնպիսի մէկն Կաթողիկոս անուանել, որ կանխաւ խոստացած լինի միշտ պետական հրահանգով շարժիլ իւր գործառնութեանց մէջ։ Ռուսաստանի ժողովուրդն քաջ կը ճանաչէր զՄակար և ո՛չ մի քուէ տուած չ՛էր նմա. բայց ե՞րբ մտքէն կ՛անցնէր թէ Պօլսոյ Պատրիարքն և քանի մի համախոհք բացառութիւն պիտի ստեղծեն Մակարի Կաթողիկոսացումն ընդունելու համար և փոխանակ պարծանք բերելու՝ փորձանք պիտի բերեն դպրոցաց գլխուն։

Սակայն Ռուսաստանի Հայն խապառ չը վհատեցաւ և երբ տեսաւ թէ կաթողիկոսական խնդիրն ազգակործան լուծումն ունեցաւ և դպրոցական խնդրոյն համար բոլորովին անտարբեր է Պօլսոյ Պատրիարքարանն, ինքն Ս. Միւռոնի օրհնութեան առթիւ մի Հեռագիր

---

[1] Տես ի Յաւելուածն Բ.

ուղղեց առ Տ. Մակար Վեհափառն, դպրոցներն բանալ և պահել այն վիճակին մէջ, ուր էին իւր առաջնորդութեան ժամանակ։ Սոյն նշանաւոր Հեռագիրն Ռուսաստանի Հայութեան սրտի ձայնն է, և այնչափ պատմական մեծ նշանակութիւն ունի, որչափ մտածենք թէ՝ Ռուսաստանի մէջ արտայայտուած է և ո՛չ Տաճկաստանի կամ մի ուրիշ ազատասէր Տէրութեան մէջ։ (1)

Լուռ մնաց Էջմիածնի Գահակալն մեր Ռուսիաբնակ եղբարց ազգային զգացմանց բարձր յայտարարութեան առջեւ. լուռ մնաց և Յորութիւն Պատրիարքն իրեն համամիտ եկեղեցականներով և ժողովականներով, որոց համար ամեն բան Մակարի Կաթողիկոսացման մէջ կ՚ամփոփուէր, ամեն եռանդն ու քաղաքագիտութիւն անոր կը բղխէր և յայն կը վերահոսէր։

Տխուր է արդարև այս տեսարանն ամեն տեսակէտով. — Ռուս Կառավարութեան ջանքն Հայոց ազգային կրթական զարգացումն խամրելու և ջնջելու համար, Էջմիածնի Գահակալին մեղսակցութիւնն սոյն ազգասպանութեան մէջ, Պօլսոյ Պատրիարքարանի դատապարտելի անտարբերութիւն և Ռուսիոյ Հայոց դառնաղէտ և մշտամորմոք վշտակրութիւնն։

Այս ամենատխուր տեսարանին առջեւ արիւն կը հոսի զգայուն Հայու սրտէն, երբ կը պատկերացնէ Ազգային զարգացման ընդհատման անդարմանելի հետեւանքներն և մանաւանդ երբ ինքն եւս քանի մի կաթիլ սուրբ քրտինք և արտասուք ցօղած է այդ կրթական զարգացման սուրբ անդաստանին մէջ։

[1] Տես ի Յաւելուածն Գ.

1860 թուականին, Ազգային յառաջադիմութեան յուսով վառուած, և Հայոց լեզուի մշակութեան ու ծաւալման սիրովն յափշտակուած, 'ի միջի այլոց, այս խօսքերն կուղղէինք 'ի Ռուսաստան Հայ մանուկներուն. « Հայկազուն մանկունք, դիմադրութիւններ և խոչընդոտներ կան մեր առաջին, որոց կարող ենք ընդդիմանալ և յաղթել միայն մեր Եկեղեցւոյ ազատական սիրով, մեր առաքինի հայրենասիրութեամբ և մեր Ազգային լեզուի մշակութեամբ, յաղթութեան պսակ ստանալով մեր Ազգի յարատեւ կենդանութիւնն ու բարոյական յառաջադիմութիւնն․․․․ պէտք է զգանք, Հայկազուն մանկունք, որ Ազգի լուսաւորութեան այն մեծամեծ Բարերարներն, որոց անուններն կարդում ենք Պատմութեան մէջ և որոց արարքն մեզ զարմացնում է, նոքա բոլորն աշխատել են մեզ համար, մենք մտել ենք նոցա ժառանգութեան մէջ և ոտք ենք կոխել այն ճանապարհի վրայ, որ նուիրական է նոցա ընթացքով։ Պէտք է իմանանք անշուշտ, որ ուր նոքա կանգնել են (կանգ են առեր) մենք պէտք է սկսինք, ուր նոքա հիմք են ձգել լուսաւորութեան, մենք պէտք է շարունակենք և մեր յետագայից աւանդենք 'ի կատար հասուցանելու ազգայնութեան այն հրաշալի տաճարն, որոյ վրայ արիւն քրտինք են թափել մեր երանելի Նախահայրերն »։ (1)

Այսօր եւս, 28 տարիներէ զկնի, կը թողունք անսիրտներն, որոնք առանց սարսուռ զգալու կը կրկնեն թէ վերջացած համարելու է Հայութիւնն 'ի

(1) Հայերէն քերականութիւն Գ. Մուրատեանց. Տփխիս 1860։

Ռուսաստան, ինչպէս երբեմն 'ի Լեհաստան, և մեր խօսքն կ'ուղղենք նոցա, որոնք սիրտ կը կրեն, հոգի կը կրեն, որոնք Ազգի կենդանութեան գուշակներ են և ո՛չ մահուան և որոց մահուան րոպէին իսկ Հայ անուն չը սառիր իրենց ցուրտ շրթունքներուն վրայ, այլ կը հնչի անդր քան զմահ, անդր քան զգերեզման։

Քրիստոնէութիւնն կատարելութեան կրօնքն է․ կատարելութեան հասնելու մի անհրաժեշտ պայմանն է ուսուցանելն և ուսանիլն։ Քրիստոնէական Հաւատոյ Հիմն ու Քրիստոնէութեան Հիմնադիրն ինքն՝ Վարդապետ էր, Ուսուցիչ էր։ «Գնացէ՛ք, Ուսուցէք» այս էր իւր պատուէրն իւր աշակերտներուն։ Հետևապէս, քրիստոնէական կոչման հետ անբաժան կապուած է ուսուցանելու և ուսանելու պարտաւորութիւնն։ Քրիստոնէական Եկեղեցւոյ և Դպրոցի հիմնաքարերն միասին դրուած են։ Քրիստոնէութիւնն մի անընդհատ ուսուցչութիւն ու աշակերտութիւն է։ Մեր Ս. Գրիգոր Լուսաւորչի գլխաւոր հոգածութիւնն եղաւ նորահաւատից համար իսկոյն դպրոց բանալ, ուր կը պատմուի թէ, կ'ուսանէր նոյն ինքն թագաւորն Տրդատ։ Նորա յաջորդներն, Ս. Սահակ ու Մեսրոպ, իրենց աշակերտներով, վարդապետութիւն ու ուսուցչութիւն իրարմէ անբաժան ըմբռնած են։ Նոքա, ո՛չ միայն եկեղեցական, այլ իրենց ժամանակին գտնուած ամեն կարեւոր ուսմունք ու գիտութիւն ուսած են եւ ուսուցած։ Հայք միշտ հաւատացած են, որ իրենց Հայրապետի և Հոգեւորականութեան կոչման ու պատուոյ անհրաժեշտ պայմանն

է լոյս և գիտութիւն ծաւալել ժողովրդեան մէջ։ Այսպէս հաւատացած են, քանզի այսպէս տեսած են և այսպէս կը հաստատէ Հայոց Ազգի Պատմութիւնն։ Մեր վանքերն մեծ մասամբ ուսումնավայրեր եղած են և իւրաքանչիւր Գաւառ, կամ քաղաք, կամ գիւղ ընդունած է այդ Վանքերէն ո՛չ միայն հմուտ եկեղեցականներ, այլ և բարեկիրթ անդամներ Հասարակութեան։ Բնաւ գոյութիւն ունեցած չեն Հայոց մէջ այն վէճերն թէ՝ կղերականի՞ն կը պատկանի ուսուցանելու իրաւունքն թէ աշխարհականին։ Քանզի Հայք ուսանելու և ուսուցանելու մէջ միշտ իրենց Եկեղեցւոյ ոգով զարդացած և իրենց Եկեղեցւոյ շաւղով ընթացած են Կրթութեան ասպարիզին մէջ, որ իրարմէ երբեք չը բաժնէր Եկեղեցականն ու Եկեղեցին։ Եկեղեցի և Եկեղեցականութիւն կամ Ժողովուրդք և Եկեղեցականք միշտ համերաշխ եղած են իրենց հոգւոր և մտաւոր զարգացման գործոյն մէջ։ Այսպէս է նաև այսօր Հայոց Ազգի համար։ Հայք ամեն տեղ ունին ազգային դպրոցներ իրենց անմիջական խնամակալութեան և հսկողութեան տակ. բայց Հայ պատանեակք կը յաճախեն նաև պետական դպրոցները։ Հայ պատանիներէն բազումք, արդէն զարգացած լինելով իրենց Լեզուի ու Կրօնի ուսմանց մէջ, հետամուտ եղած են բարձրագոյն վարժարանաց մէջ եւս վայելել կրթութեան և գիտութեան արգասիքներին։ Նոքա ո՛չ միայն Ռուսական բարձր դպրոցներն յաճախած են և կը յաճախեն, այլ և Եւրոպիոյ նշանաւոր Համալսարաններն իսկ կը դիմեն, երբ իրենց միջոցները կը ներեն։ Հայք մի երկիւղ միայն ունին, այն

է չկորուսանել իրենց լեզուն և իրենց կրօնական կամ դաւանական անկախութիւնն։ Հայք հանապազօր կ՚օրհնեն այն Տէրութիւններն, որոնք քաջալերած են և կը քաջալերեն միշտ Հայոց հոգեւոր, բարոյական և մտաւորական զարգացումն։ Այս մասին անհուն է Հայոց երախտագիտութիւնն առ ժողովրդասէր Պետութիւնն Օսմանեան, որոյ բարերար հովանւոյն տակ ամեն ազգեր կը վայելեն կրօնական և կրթական լիակատար ազատութիւն։

Անհնարին ցաւ է տեսնել, որ Ռուս Կառավարութիւնն Հայոց կրօնական և կրթական ազատութիւնն կը բռնաբարէ, Հայոց վարժարանները կը փակէ, Հայոց նախակրթարաններն ռուսական նախակրթարանաց կաղապարին կը վերածէ և պետական դպրոցներէն Հայոց լեզուի և Կրօնի դասերն կ՚արտաքսէ։ Եթէ կրթութիւնն վնասակար է Ռուս Կառավարութեան, ինչո՞ւ ինքն օրաւուր կը բազմապատկէ Ռուս վարժարանաց թիւն լայնածաւալ Պետութեան մէջ։ Եթէ վնասակար չ՚է, ինչո՞ւ կը բռնաբարուի Հայոց Կըրթական Ազատութիւնն, ինչո՞ւ կը փակուին վարժարաններն և կրթական իրաւասութիւնն կը խլուի Հայոց ձեռքէն։

Մի ժողովուրդ որ իւր ծախքով վարժարաններ կը պահպանէ, մի ժողովուրդ, որ բնաւ նիւթական ծանրութիւն չը պատճառէր Կառավարութեան իւր կրթութեան համար, այլ ինքնին խաղաղ քայլերով կը շարունակէ իւր բարոյական և մտաւոր յառաջդիմութիւնն, մի այսպիսի ժողովուրդ ինչո՞ւ զրկուի իւր ազգային դպրոցներէն, իւր ազգային զարգացումէն·

ինչո՞ւ կորուսանի, ինչո՞ւ անհետի երկրագնտի երեսէն, 4000 տարիէն աւելի յատուկ գոյութիւն ունենալէն զկնի, հաւատարմութեամբ ու նահատակութեամբ իւր Եկեղեցին եւ Լեզուն պահպանելէն զկնի, իւր քրիստոնէական լուսով ու կեանքով՝ զինքն շրջապատող կամ իւր վերայ իշխող ազգերուն միշտ չահաւոր հանդիսանալէն զկնի։ Ինչո՞ւ խլուի այսպիսի մի Ազգի Կրօնական և Կրթական ազատութիւնն և արմատէն կտրուի այն ծառն, որ միշտ պտղաբեր եղած է և ո՛չ երբէք անպտուղ։ Ի՞նչ յանցանք գործած է այդ Ազգն Մարդկութեան դէմ, Պատմութեան դէմ, նոյն իսկ Ռուս Կառավարութեան դէմ։ Միթէ Ռուս Կայսերք, յատուկ հրովարտակներով յաճախ հռչակած չե՞ն Հայ Ազգի հաւատարմութիւնն ու մատուցած ծառայութիւններն։ « Հայոց Ազգի սրտագին հաւատարմութիւնն» կը գոչէր Աղէքսանդր Առաջին, « ծառայութիւնքն և քաջութիւնք՝ քաղցր պարտք կը դնեն մեր վրայ յայտնել բովանդակ աշխարհի մեր իրաւացի երախտագիտութիւնն ու գոհութիւնն առ բոլոր անդամս այդ Ազգին, որք կը բնակին ի Ռուսաստան »։ (1)

Չը կայ մի Պետութիւն, որ այնքան տարբեր ազգութիւններ կամ ցեղեր պարունակէ, ինչպէս է Ռուսաստանն։ Չը կայ, հետեւապէս և մի Պետութիւն որ միջոց ունենայ մարդկային ազգի Պատմութեան մէջ այնքան փառաւոր տեղ գրաւել, ինչպէս է Ռուսաստան, եթէ ազատ թողու իւր հպատակ ազգաց Կրօնքն, ազատ թողու որ զարգանան իրենց յատուկ

(1) Տես ի Յաւելուածն Դ.

լեզուաւ և յատուկ տիպով։

Բայց Թուի Թէ Ռուս Կառավարութիւնն այդպիսի փառաց չը ցանկար, և Թերևս կը ծիծաղի իսկ մեր սոյն պարզամտութեան վրայ։ Ռուս Կառավարութիւնն այլուր կորոնէ իւր փառքն — իւր հպատակ տարբեր ազգերն՝ ի մի ձուլել՝ կրօնքով, լեզուաւ, սովորութեամբ, աւանդութեամբ, և այլն. քանզի Կրօնական և Կրթական ազատութեան բռնաբարումն ուրիշ բան չը նշանակէր։ Սակայն մենք Հայքս միթէ լուռ և անշշուկ ականատես միա՞յն պիտի լինինք սոյն ազգասպան հարուածներուն։ Միթէ պիտի չ՚աղաղակե՞ք, չը բողոքենք, երբ կը տեսնենք թէ՝ այս ընթացքով, շատ չ՚անցած, Սահակայ և Մեսրոպայ լեզուն այլ ևս պիտի չը հնչէ ո՛չ միայն Հայ կրթարանաց, այլ և Հայ գերդաստանաց մէջ ի Ռուսաստան։ Միթէ տակաւ առ տակաւ պիտի չը մտնուի՞ն խժդժութեան նոյն իսկ մեր Սուրբ Տաճարաց բեմերն, ուր ընթերցողք ու լսողք պիտի չը հասկնան իրենց կարդացածն ու լըսածն։ Միթէ լո՞ւռ պիտի մնանք, երբ կը տեսնենք, երբ կը գուշակենք թէ մեր հայեցի հրաշունչ ու հոգեշունչ աղօթից, երգոց, նուագաց ու ընթերցուածոց տեղն պիտի բռնեն օտար լեզու և օտար հչմունք։ Ո՛հ, միթէ չ՚ե՞նք սոսկար այն պատմական տխուր օրինակներէն, որ շատ տեղ Հայ լեզուն մնացած է միայն Եկեղեցւոյ, պատերու, տապանաքարերու ու շիրիմներու վրայ։

Ամեն անգամ որ կը յիշեմ Լեհաստանի ուղեւորութիւնս և այն անմոռանալի օրն, երբ այցելեցի Լեմբերգի հայանուն Առաջնորդարանն ու Կուսաստանն,

սիրտս կը խռովի, աչքերս կը տամկանան։ Եկեղեցա-
կան գրքեր կը կարդային մօտս, ցոյց տալու համար
որ Հայերէն ժամերգութիւնն պահպանած էին․ բայց
իրենք իսկ կը խոստովանէին, որ բնաւ չ'են հասկնար։
Կուրախանային, որ մի հայ վարդապետ կը տեսնեն,
բայց միանգամայն կ'արտասուէին, որ չ'են կարող հա-
յերէն խօսիլ և հասկնալ։ Եթէ սպիտակահեր հայախօս
Մայրապետն ևս չը լինէր, միայն մեր հայ դէմքերն ու
աչքերն պիտի մեր սրտերու զգացումներն արտայայ-
տէին իրարու։ Քանի կը յիշեմ այն օրն, սիրտս կալե-
կոծի․ քանզի մի կողմէն կ'ուրախանայի որ այդ մոռ-
ցուած Հայութեան մէջ տակաւին սէր կը նշմարէի առ
ազգութիւնն․ իսկ միւս կողմէն չ'էի կարող արտա-
սուքս զսպել, երբ կը տեսնէի թէ հայ լեզուն գրքե-
րու մէջ միայն մնացած է և ո՛չ ի շրթունս կենդանի
հայութեան, և մանաւանդ երբ խորազգաց թախծու-
թեամբ կը գուշակէի թէ կարող չ'է տևական լինիլ
այդ կէտին հասած մի ազգութիւն (ինչպէս որ շատ
տեղ Լեհաստանի գաղթականաց միայն տապանաքարե-
րըն մնացած էին) եթէ շուտով դարման չը մտածուի։

Մինչդեռ մենք նոյն ժամանակ աղաղակ կը բառ-
նայինք ազգային պարբերականաց միջոցաւ՝ այս Գաղ-
թականաց մէջ իսկ հայութեան խօսքն ու լեզուն ար-
ծարծելու համար միջոցներ խորհիլ, այսօր կը տես-
նենք, որ Ռուս Կառավարութիւնն Հայութեան առ-
ջեւ կը փակէ Հայ Վարժարանն, կը փակէ կերպիւ իւիք
Հայ Եկեղեցին և կառաջնորդէ դէպ ի այն վիհն ան-
յիշատակութեան, ուր կը գլորին իրենց Կրօնական ու
Կրթական Ազատութենէն զրկուող ազգերն, իրենց

Եկեղեցիէն ու Լեզուէն օտարացող ժողովրդներն ։

Արդ՝ ամեն Հայ, որ Հայու սիրտ կը կրէ և Հայու արիւն ունի․ ամեն Հայ, որ չ՚ուզեր որ մեր Նախահայրերէն մնացած երկու ամենաթանկագին աւանդներն — Եկեղեցին ու Լեզուն — թաղուին ու անհետին ի գուբն անյիշատակութեան, պէտք է տքնի, պէտք է խորհի, պէտք է աղաղակէ, պէտք է ամեն ճիգ թափէ վտանգէ ազատել Հայ Եկեղեցին ու Դպրոցն ՚ի Ռուսաստան ։ Կան պաշտօնական միջոցներ, կան օրինական և իրաւաբանական միջոցներ, կայ նաև աղերսանաց և աղաչանաց միջոցներ ։ Ծերունին Պրիամոս իւր որդի Հեկտորին դիակն Աքիլլէսէն ստանալու համար՝ համբուրեց Աքիլլէսի ձեռքն, այն ձեռքն որ դիաթաւալ կործանած էր զՀեկտոր ։ Աքիլլէս սարսռաց, Աքիլլէս լացաւ և հրամայեց հօրն տալ որդւոյ մարմինն, զոր քաղաքի մէջ շրջեցնել կըտար ՚ի նշան ամենամեծ յաղթութեան ։

Միթէ չ՚ե՞նք կարող յուսալ, որ Ռուսիոյ Ինքնակալն ևս կը գիջանի Ազգին վերադարձնել իւր հարուածեալ՝ բայց ո՛չ անշնչացեալ Կրօնական և Կրթական Ազատութիւնն, երբ նշմարէ թէ Հայ Ազգն իւր իրաւունքն ստանալու համար շարժուած է այն հզօր և անդիմադրելի փափաքով, ինչպէս էր Պրիամոս ։ Երբ տեսնէ թէ Հայք պիտի չը լռեն, պիտի դիմեն ամեն տեղ ամեն Վեհապետաց, որոց հովանույն տակ կը գտնուին, պիտի նոցա միջնորդութիւնն հայցեն, պիտի աղաղակեն, պիտի ձանձրացնեն, մինչև որ Հայ Եկեղեցին ու Դպրոցն այն ազատութիւնն վայելեն ՚ի Ռուսաստան, զոր վայելած են ամեն դարուց և ժամանակաց մէջ, և զոր այժմ կը վայելեն ամեն երկրի մէջ՝ բաց ՚ի Ռուսաստանէն ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Արժան կը համարիմք, 'ի հաստատութիւն մեր գըրածներուն, յառաջ բերել այս տեղ քանի մի կարեւոր և նշանաւոր գրուածքներ, որոնք Հայ վարժարանաց խնդրոյն կը վերաբերին և արդէն հրատարակուած են։*

*Ա.* — Պատասխանագիր Ս. Էջմիածնի Սինօդին առ Կառավարչապետն Կովկասու.

*«Հաղորդագրութիւն Ձերդ Պայծառափայլութեան որ 31 Յուլիսի տարւոյս ընդ համարաւ 1062, յաղագս 'ի կատար ածելոյ անմիջական իշխանութեան Սինօդիս Էջմիածնի զկանոնս վասն եկեղեցական Հայ դըպրոցաց, համաձայն պահանջման առ այս Նախարարութեան Ներքին Գործոց՝ յանելանելի վիճակ կացոյց զՍինօդս։*

*«Սինօդս ծանուցմամբ 'ի 24 Մայիսի տարւոյս համարաւ 1243, պատիւ կալաւ 'ի գիտութիւն հասուցանել Ձերդ Պայծառափայլութեան՝ թէ զգործս եկեղեցական-ծխական դպրոցաց մերոց անմիջապէս վարէր 'ի Տէր հանգուցեալ Ծայրագոյն Պատրիարքն և Կաթողիկոսն ամենայն Հայոց, հետեւելով օրինակի Նախորդաց իւրոց։*

*«Ծայրագոյն Պատրիարքունք գլուխ կացեալ Սըրբոյ Եկեղեցւոյ Հայաստանեայց ըստ կանոնաց և դաւանութեանց նոյն Եկեղեցւոյ, նուիրականս*

եղելոց նաեւ օրինադրութեամբ Ռուսիոյ, յանձինս բառնան զգլխաւոր հոգատարութիւն Կրօնական-բարոյական կրթութեան Հայ Ազգի և մանկանց Նորին՝ ցուցանելով զճանապարհ խաղաղ և առաքինի կենաց և հնազանդութեան օրինական իշխանութեանց համաձայն վարդապետութեան Ս. Աւետարանի։

«Առ այս 'ի սկզբնաւորութենէ անտի Քրիստոնէութեան դպրոցն համարեալ է նախադուռն Եկեղեցւոյ, և Կաթողիկոսունք 'ի գլուխ կացեալ Եկեղեցւոյ կառավարեալ են և զդպրոցն. վասն որոյ և յամենայն ժամանակս Հայ Եկեղեցական դպրոցք բացեալ և հաստատեալք են կոնդակօք Կաթուղիկոսաց և ինքեանք Կաթուղիկոսունք տուեալ են զհրահանգս և զկանոնս վասն այդոցիկ դպրոցաց, առանց որ և է միջամտութեան և մասնակցութեան Սինոդի Էջմիածնի։

«Ցորժամ յամին 1874 խնդիր եղեւ կատարման Բարձրագոյն 'ի 23 Նոյեմ. 1873 ամի հաստատեալ կարծեաց Պետական Խորհրդոյն վասն ենթարկելոյ զՀայ Եկեղեցական-ծխական դպրոցս հսկողութեան (արքունի) Վերատեսչաց ժողովրդական դպրոցաց, Կովկասեան գլխաւոր Կառավարութիւնն 'ի սկզբան ընդ Սինոդիս եմուտ 'ի գրագրութիւն և 'ի ծանուցանել վերջնոյս զո՛չ ունիլ իւր իրաւունս միջամտուեան 'ի սոյն օրինակ գործս, զչարունակութիւն թղթակցութեանն ուղղեաց առ երջանկայիշատակ Գէորգ Կաթուղիկոս։

«Գործադրութիւն նորոց կանոնաց ունի փոփոխել զոր այժմս է կազմակերպութիւն Հայ ծխական-եկեղեցական դպրոցաց, սահմանեալն իշխանութեամբ

*Ծայրագոյն Պատրիարք-Կաթուղիկոսաց, իսկ միջամըտել 'ի գործ իշխանութեան Գլխոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ՝ Սինոդս, որոյ անդամք հոգեւորականք ստորադրին Գլխոյ Եկեղեցւոյն, չ'ունի իրաւունս եւ չ'կարէ ենթարկել զինքն ծանր պատասխանատուութեան առաջի Եկեղեցւոյ և խղճի իւրոյ։*

*«Ուստի յարգոյաբար յայտնելով Ձերում Պայծառափայլութեան, Սինոդս խոնարհաբար խնդրէ յարգել զխնդիր Սինոդիս և այնու ազատել զՍինոդս 'ի ներկայ յանելանելի վիճակէ»։*

15 *Սեպ.* 1884, *Թիւ* 2451,

**Տեղ. Ատենապետի Սինոդի**

ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

**Անդամք**

ՄԵՍՐՈՎԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ

ՅՈՎԱԿԻՄ »

ԵՐԵՄԻԱ »

ՆԵՐՍԷՍ »

ՄԱՄԲՐԷ ՎԱՐԴԱՊԵՏ

*Սինոդն դպրոցական խնդրոյն նկատմամբ հետեւեալ հեռագիրն ևս կուղղէ առ Կառավարչապետն Կովկասու.*

*«Սինոդս պատիւ ունի յարգանօք յայտնել Ձերդ Պայծառափայլութեան, զի որպէս բազում անգամ խոնարհաբար յայտարարեալ է՝ թէ Անդամք Նորին*

*չ՚համարեն ինքեան զիրաւունս անցանել զիրաւասութեամբ Պատրիարք-Կաթուղիկոսի, որ նուիրական է վասն Հայաստանեայց Եկեղեցւոյ, զնոյնն կրկնէ եւ այժմ, թողլով զանօրէնութիւն կանոնաց հաստատելոց 'ի 16 փետր. 1884 ամի, 'ի բարեհաճ նկատողութիւն բարեխնամ Կառավարութեան »:*

**Տեղ. Ատենապետի Սինօդի**

**ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

**Անդամ**

**ՄԵՍՐՈՎԲ ԵՊԻՍԿՈՊՈՍ**

22 *Փետր.* 1885,

*Բ.* — Արեւելք *լրագրի* 773 *թուոյն և* Արեւելեան Մամուլ *հանդիսի* 1886 *ամի Օգոս. ամսատետրին մէջ հրատարակուած է հետեւեալ յօդուածն, որ Պետրսբուրգէն գրուած է և արժանի է ամեն Հայու խորին ուշադրութեան:*

*Վեց եօթն ամիսներէ ի վեր է որ Հայոց ժողովրդի մէջ շարունակ լուրեր էին տարածուած թէ՝ շնորհիւ Վ. Ն. Հ. Մակար Կաթողիկոսի նորէն բացուելու են Ռուսահայոց գոցուած դպրոցները:*

*Այժմ միայն, երբ տեղի ունեցած դպրոցական տխուր արկածքէն անցած է աւելի քան մի տարի ու կէս, Հայ լրագրերում երեւան է գալիս մի 'պաշտօնական գրութիւն' ուսումնարանների իբր թէ բացուելու մասին:*

*Ուշադրութեամբ կարդալով « Հայոց Ծխական Ուսումնարանների այդ կանոնները » մեծ զարմացմամբ տեսանք, որ դոցա և ոչ մի տողն մեզ բնաւ երբէք չ'է յիշեցնում նախկին փակուած*

ուսումնարանների վերաբացումը, այլ թէ ուսումնարանների վերաբացման խոստումը տարակուսութիւնների տակ՝ մինչ ամենէն բացուելու են մի կարգ ծխական երկդասարանեայ պարզ պարզ դըպրոցներ, որոնք բնաւ ո՛չ մի կապ, ո՛չ մի յարաբերութիւն չունին Ռուսահայոց յիսնամեայ անդուլ ջանքերով նախանձելի վիճակի հասցրած այն խիստ արդիւնաշատ ուսումնարանական վայրերի հետ, որք այնպիսի անխղճօրէն փակման տխուր դրոշմը կրեցին իւրեանց վրայ 1885 թուականին փետր. ամսի վերջերին:

Այսպէս ուրեմն, աւելի քան յիսնամեայ պատկառելի մի ժամանակամիջոցում Ռուսահայ երիտասարդութեան անձնուէր ջանքերով զանազան արգելառիթ խոչընդոտների մէջ գոյութիւն առած, սնուած, փայփայուած, մանկութիւնից երիտասարդութեան հասակին տուած Ռուսահայոց դպրոցը, որն այդ կէս դարում մի ամբողջ ազգաբնակութեան հոգին ու շունչն է եղած, մի անգամ ընդ միշտ դադարում է գոյութիւն ունենալուց գլխաւորապէս շնորհիւ մի յայտնի Ռուս պաշտօնեայի սուտ խարդաւանանքների ու լիրբ ցանկութիւնների: Եւ այս բոլորի առաջին, որ կարող էր առնել մի բարձրաստիճան Հայ պաշտօնեայ՝ Կաթողիկոսական Տեղապահ և ապա Կաթողիկոս, որ և Նորա սուրբ Նուիրական պարտքն էր, չ՚արաւ, և այդպիսով Ազգի կէս դարու մտաւոր-բարոյական կեանքի պտուղն, նորան կեանք, կենդանութիւն ներշնչող դպրոցը գոցվում ու համարեա բնաջինջ է լինում Վեհ. Մակար Կաթողիկոսի օրով, շնորհիւ Նորա անտարբերութեան, որ, ինչպէս յայտնի կը լինի վերջը, հետեւանք է Նորա փառասիրութեան:

Ահա՛ ինչու:

Պատմենք ամենայն անաչառութեամբ և փոքր ի շատէ մանրամասնօրէն:

Ռուսահայերը մինչ անցեալ տարւոյ փետր. 25, երբ տեղի ունեցաւ մօտ 600 Ռուսահայոց դպրոցների փակումը Ռուսաց կառավարութեան ձեռօք, բաց ի Գէորգեան ճեմարանէն և 5—6 թեմական դպրոցներէ, ունէին երեք կարգ դպրոցներ:

Ա. — Ցայժ կանոնաւոր 6—7 դասարաններէ բաղկացած օրի-

որդական ուսումնարաններ . օրինակ , Գայիանեան , Յովնանեան Թիֆլիզի մէջ ։

Բ. — Երեք չորս դասարաններէ բազմաթիւ երկսեռ դըպրոցներ ։

Գ. — Մի և երկու դասարաններէ բաղկացած երկսեռ դըպրոցներ. նոցա կարգումն են և գիւղական դպրոցներն ։ Բաց ի այս կարգ ուսումնարաններից՝ շատ քաղաքներում գոյութիւն ունէին և այսպէս ասուած « Մանկական պարտէզներ » ուր մանչ և աղջիկունք Հայ օրիորդների ջանքերով խիստ դիւրին և կենդանի կերպիւ , զանազան խաղերի միջոցաւ , ամենատարրական ուսումն կ'առնէին ։ Այս մանկական պարտէզների մի առաւելութիւնն էլ նորանում էր կայանում , ուր շատ մանչ ու աղջիկ , որոնք Հայերէն չ'էին իմանում , կամ դժուարութեամբ էին խօսում , այս ընտանեկան յարկի բնաւորութիւն կրող պարտէզներում կատարելապէս սովորում , խօսում ու գրում էին իրենց մայրենի լեզուով ։ Թողունք նոցա երգեցողութիւնն , որի ազդեցութիւնն ամեն տեսակէտէ բարձր է ։

Այս բոլոր դպրոցներն , ինչպէս և թեմական դպրանոցներն կառավարվում էին ժողովրդից ընտրուած Հոգաբարձուների ձեռքով և ենթարկվում էին Հայ Հոգեւոր իշխանութեան ։ Դասատուք նշանակվում էին բոլոր այն անձինք , որոնք համապատասխան էին գտնվում իրենց կոչմանն , թէեւ մասամբ շատերն առանց վկայականների էին ։

Ամեն մի վիճակի դպրոցները կանոնաւոր վիճակի մէջ պահելու նպատակաւ , որպէս հսկող մարմիններ , Հայ Հոգեւոր կառավարութիւնից նշանակվում էին թեմական Տեսուչներ , որոց պարտաւորութիւնն էր շարունակ այցելել իրենց յանձնուած դպրոցները ։

Սոցա վրայ նոյնպէս պարտաւորութիւն էր դրուած հրաւիրել ու արձակել Ուսումնարանների ուսուցիչներն և ուսուցչուհիներն ։

Գալով դպրոցական ծրագրին , պէտք է ասած , որ Հայ դըպրոցական վարչութիւններն թէեւ ընդհանրապէս չունէին մի որոշ ծրագիր , բայց և այնպէս շարունակ երկար տարիների համար յօրինում էին բաւականին նպատակայարմար լուրջ , բայց մի և

նոյն ժամանակ համեստ ծրագրեր, համապատասխանեցնելով զայնս Հայ մանկտւոյն բնութեան և մանկավարժական արգասաւոր ուղղութեան ։

Ամեն ուսումնական տարուայ վերջերում Հոգևոր Կառավարութիւնն Թեմական Տեսուչների միջոցաւ Ռուս կառավարութեան կը ներկայացնէր մի ընդհանուր Տեղեկագիր ռուսահայ դպրոցների ուսման և վարչութեան նկատմամբ ։

1884 փետր. 16ի ռուսական օրէնքի համաձայն, որի հետևանքն ուսումնարանների փակումն եղաւ, Ռուս Կառավարութիւնն ցանկացաւ սահմանափակել Հայ Հոգևորականութեան իրաւունքներն դպրոցների վարչութեան նկատմամբ ։ Աւելի պարզ ասելով, այդ օրէնքի զօրութեամբ Հայ հոգևոր իշխանութեան իրաւասութիւնն, դպրոցական խնդրում, մինչ այն աստիճան սահմանափակ վիճակի էր դրվում, որ նա դադարում էր այնուհետև տէր դառնալու իրեն պատկանող դպրոցներին, չնայելով որ ուսումնարանների գոյութիւնն պահպանելու համար բոլոր ծախքը մատակարարելու էին Հայ ժողովուրդն ու Հայ Եկեղեցւոյ կալուածներն, ուր գտնվում էին այդպիսիք ։

Այս տեղէն պարզ երևում էր, որ այսպիսի պայմանների մէջ Հոգևոր Կառավարութիւնն կոչուած էր նուաստ միջնորդի դեր կատարելու և դպրոցների նիւթական միջոցի հայթայթելուն հետամուտ լինելու ։

Եթէ Հոգևոր Կառավարութիւնն ընդունէր բոլոր այն խիստ աննպաստ պայմաններն, այն ժամանակ բոլոր ուսումնարաններն շարունակելու էին իրենց գոյութիւնն ։

Մի երկու խօսքով յիշենք ընթերցողին այն պայմաններն, հոգևորականութեան իրաւունքների սահմանափակումն, որ Ռուս կառավարութիւնն առաջարկած էր մեզ ընդունելու ։

Ուսուցիչներն և Թեմական Տեսուչներն նշանակուելու և արտաքսուելու էին Ռուս կառավարութեան ցանկութեամբ, թէև Հայ հոգևոր կառավարութեան միջոցաւ. այնպէս որ ամեն մի րոպէ Ռուս կառավարութիւնն իրաւունք ունէր իսկոյն հեռացնել իրեն աննպաստ նկատած այս կամ այն ուսուցիչն, Տեսուչն իրենց պաշտօններից ։ Սոքա անպատճառ Տէրութեան բարձրագոյն Ուսումնարաններում պէտք է կրթուած լինէին և վկայական առած ։

Թեմական տեսուչներ, որ մինչեւ այն ժամանակ նշանակվում էին աշխարհականներից, այժմ նշանակուելու էին Փիփայն Տէր-Մինասեան հաստատած նկատուած հոգեւորականներից։ (Եւ տակաւ առ տակաւ անշուշտ Ռուս հոգեւորականներից)։

Ամեն ժամանակ դասաւանդութեան միջոցին, այդ կանոնների զօրութեամբ, ռուս պաշտօնեաներին լիակատար իրաւունք էր տրվում ներկայ գտնուելու Հայոց բոլոր դպրոցներում դասախօսութեան միջոցում և այդպիսով անկասկած շարունակ խուզրն-դոտներ էին յառաջ գալու, որի հետեւանքներն լինելու էին կամ յաճախ ուսուցիչներն արձակել, երբ նոցա դասախօսութիւնն հաճելի չ'է եղել ռուս պաշտօնեային կամ թէ ուսուցիչներն բռնադատուած պէտք է լինէին օ'չ անձնուէր ծառայելու դպրոցին, որ արտաքսուելու սպառնալիքէ ազատ մնային։

Ուսումնարանների ծրագրերն ամեն կէտով պէտք է համապատասխանէին Ռուս Կառավարութեան Ուսումնարանների ծրագրին։ Ամեն մի նոր ծխական դպրոց բանալու համար մեծ դժուարութիւնների էր հանդիպելու Հայ Հոգեւորականութիւնն։

Ուստի ինչպէս իսկ արտաքին կողմէն երեւում է, որ և է մի պարտաճանաչ ազգային մարմին, որպիսին ներկայացաւ այդ ժամանակ Էջմիածնի Սինոդն, չէր կարող ընդունիլ այսպիսի ճնշական պայմաններ. որպէս մեր օրերում բնաւ չտեսնուած մի վեհանձն անձնուիրութեամբ, Հայ Հոգեւորականութիւնն մերժեց այդ նոր կանոնագրութիւնն, թէեւ նախօրէն իսկ Ռուս Կառավարութեան կողմից խիստ սպառնալիքներ էին տեղում Սինոդական հարց գլխին, որոնք համարձակութիւն կունենային դիմադրել Պետերբուրգից յայտնած Բարձրագոյն տնօրէնութեան։ Սակայն մինչ Սիպերիա քշելու սպառնալիքի առաջ Հայ հոգեւորականութիւնն չվարանեց մերժել նոր կանոնագրութիւնն, իւր համարեա՛ թէ «չ'ենք կարող» ազդու պատասխանով։

Ազգի կողմից այս մերժումն, ինչպէս յայտնի է, խիստ խոր տպաւորութիւն արաւ թէ՛ Կայսերական Կառավարութեան վերայ և թէ՛ պաշտօնական ու պաշտօնական գոյն կրող թերթերու վրայ։ Օր ըստ օրէ Ռուսահայ ժողովրդի արդարացի յուզմունքն դպրոցների փակման առթիւ, որ տեղի ունեցաւ անմիջապէս Սինոդի մերժողական պատասխանն առնելէ զկնի, հասաւ այն աս-

տիճան դժգոհութեան դէպ ի Կառավարութիւնն, որ այս վերջինս ակնյայտնի ստիպուած եղաւ մի կերպ Հայ ժողովրդին գոհացում տալ։ Այս նպատակաւ Կովկասեան կառավարութիւնն 'ի դիմաց Բարձրագոյն կառավարութեան Թիֆլիզի Կովկաս պաշտօնական թերթի միջոցաւ դիմեց Ռուսահայ ժողովրդին առաջարկելով, որ Հայերը փակուած դպրոցների փոխարէն, եթէ կամենան, ամենայն հաճութեամբ կարող են բանալու չորս և ութ դասարաններէ բաղկացած երկրորդական ուսումնարաններ, այն է պրոգիմնազիա և գիմնազիաներ. ուր դասախօսութիւն կը լինի Հայերէն լեզուով՝ որպէս տղայոց, նոյնպէս և օրիորդաց համար։ Ուստի եթէ Հայ ժողովուրդը կամենում է այս կարգ նոր դըպրոցներ ունենալ փակուած դպրոցների փոխարէն, այն ժամանակ թո՛ղ խնդրագրով դիմէ կառավարութեան, որ ուրախութեամբ կընդունի։ (Զարմանա՛լի է, թէ ի՞նչու հրաման չ'է տրվում, որ նոյն իսկ փակուածներն բացուին։)

Ռուս կառավարութիւնն այս առաջարկութիւնն նոր դըպրոցներ բանալու համար, որ աւելի լաւ է ասել այս զիջողութիւնն, որոյ մասին խօսեցաւ նաեւ Պետերբուրգում հրատարակուող մի Ռուս թերթ, պարզօրէն ցոյց է տալիս թէ՝ եթէ Հայ հասարակութիւնն իւր գործերում շարունակ անտարբեր չը գըտնուի, նոյն իսկ ամենազօրեղ պետութիւնն անգամ տրամադիր է լինում զիջանելու 'ի նպաստ Ազգին. բայց թէ պէտք է ասել, որ կառավարութեան այն առաջարկն անտես առնուեցաւ ժողովրդի ներկայացուցիչների կողմէն, գլխաւորապէս նորա համար, որ մեծ յոյս կար թէ նպատակայարմար Կաթողիկոս ընտրելով, կարելի կը լինէր նորէն միջամտել՝ բանալու փակուած դպրոցները։ Վերջապէս, որպէս յայտնի է, կայացան կաթողիկոսական ընտրութիւններն, այնպէս թէ այսպէս Կաթողիկոս անուանեցաւ Մակարն և սպասվում էր, որ բաւարար լուծում առնէր դըպրոցական խնդիրն, մանաւանդ որ թէ Մակարի կողմէն անձամբ և թէ իւր կողմնակիցներէն շարունակ յայտարարութիւններ, խոստումներ կը տեղային ամեն կողմ, թէ նորին Վեհափառութիւնն շուտով Ուսումնարանի վերաբացման իրաւունքն կ'առնու և այնու կը բացուին դպրոցներն իրենց նախկին դրութեամբ։ Զնայելով որ օր օրի վրայ այս առարկութիւններն կը կրկնուէին

և կը պաշտպանուէին Մակարի կուսակիցներից . սակայն կային մարդիկ, որ բնաւ հաւատ չ'էին ընծայում այս առարկութիւններին, քանի որ ամէն կողմէն նոքա շատ լաւ կը ճանաչէին թէ ի՞նչ է Մակար կաթողիկոսն, ինչպէս որ վերջապէս իրողութիւններն հաստատեցին այսօր, որ Մակար, դպրոցներն նոյն ծրագրաւ չ'բանալէն զատ, այլ նաև իւր միջամտութեամբ մի խիստ հարուած տուաւ Ռուսահայ դպրոցական խնդրին ։

Ահա՛ ինչպէս ։

Շնորհիւ Մակար կաթողիկոսի, Ռուսահայոց կէս դար գոյութիւն ունեցող ուսումնարաններն միանգամայն դադարեցան այլ ևս կանգուն մնալու, ըստ որում այսօրուան օրս Ռուսահայերը չ'ունին այլ ևս ո՛չ օրինակելի մանկական պարտէզներն, չ'ունին նախկին ծրագրաւ մի և երկդասարանեայ ծխական դըպրոցներն, չ'ունին երեք և չորս դասարաններէ բաղկացած տղայոց ևս օրիորդաց դպրոցներն, ինչպէս և յաւիտեան բնաջինջ եղան վեց, եօթն դասարաններէ յոյժ նախանձելի վիճակի մէջ գտնուած Հայ օրիորդական դպրոցներն ։ Ցարգելի ընթերցող, պէտք է անձամբ անձին տեսնէիր Հայ Օրիորդաց առաջնակարգ դպրոցներն, նոցա ծրագրերն և այդ ուսումնարանների սանուհիներն, այն ժամանակ միայն սրտից մի ծանր ա՜խ կը հանէիր և աչքերէդ արտասուքներ կը տեղային ։

Մեծ հարուած տուաւ Մակար կաթողիկոսն Ռուսահայոց դպրոցական գործին, ըստ որում նախ որ հակառակ իւր հաւատելուն՝ անկարող գտնուեցաւ նորէն բանալու փակուած դըպրոցները, մինչև անգամ որ և է փոփոխութեամբ . երկրորդ նա իւր համաձայնութիւնն տալով երկու դասարանէ դպրոցներ բանալու՝ խիստ սահմանափակ պայմաններով միանգամայն վերջ տուաւ այդու ամբողջ երկու տարիի չափ Ռուսահայոց յուզող ամենակենսական մի խնդրին, որն թերևս ինչ ինչ դէպքերի տակ իւր բաւարար լուծումն առնէր ։

Մեր կարծիքով քանի որ Մակար, հակառակ ազգի կամքին, իւր վրայ մեծ պարտականութիւն առաւ մի և երկու դասարաններէ ծխական դպրոցներ բանալու սահմանափակ պայմաններով, ինչո՞ւ անտես արաւ նա այսպիսի դէպքում գէթ մի և նոյն սահմանափակ պայմաններով բանալու և բոլոր այն դպրոցներն, որոնք

այժմէն իսկ արդէն դադրած են նկատուած ։ Ի՞նչ հարկ կար ուրեմն նորա ներկայութեան, քանի որ առանց նորան եւս Ռուսահայերն կարող էին միջամտել Տէրութեան առաջ բոլոր փակուած դպրոցներն նորէն բանալու կառավարութենէն առաջարկուած պայմաններով։ Վերջապէս մեզ հանելուկ է ներկայանում ուսումնարանական խնդրի այս ցաւալի կերպարանք առնելն՝ շնորհիւ Մակար Կաթողիկոսի ։

Վերեւ մենք յիշեցինք, որ Նորին Վեհափառութիւնն կարող էր ուսումնարանների փակման առաջն առնել, եթէ չըլինէր նորա փառասիրութիւնն ։

Մակար, անկասկած, լաւ գիտէր, որ իւր ժամանակին եթէ ինքն միջամտէր Կայսեր մօտ, մանաւանդ թագադրութեան օրերումն, որ ինքն կաթողիկոսական Տեղապահ էր, իւր միջամտութիւնն գէթ մասամբ, եթէ ո՛չ ամբողջովին, կը յաջողուէր. սակայն որպէս իւր անձնականին համար հեռատես մարդ, նա գիտէր որ շուտով տեղի է ունենալու կաթողիկոսական ընտրութիւնն և իւր միջամտութիւնն վատ ազդեցութիւն կ'անէր Ռուս կառավարութեան վրայ նորա մասին, եթէ նա ևս կաթողիկոսացուների կարգն ընկնէր. ուստի որպէս փառասէր և եսական (ինքնասէր) մարդ նա լաւ համարեց կանխօրէն իւր ապագայ կաթողիկոսութեան համար ճանապարհ բաց անել, քան թէ միջամտել այնպիսի մի կնճռոտ խնդրի, որպիսին է դպրոցականն, թէեւ մինչեւ իսկ յաջող հետեւանքի հասցնէր ։ Նա այդու կասկածելի անձնաւորութիւն դուրս գալով յաչս կառավարութեան, կաթողիկոսութեան ձգտելու ցանկութենէն օր առաջ պէտք է հրաժարէր ։

Մի բան ևս մեզ զարմացնում է։ Վեհ. Մակարն կարգադրութիւն է արել Ճեմարանի ներքին երեք դասարաններն ևս փակել ։ Քանի որ ո՛չ մի քաղաքում երեք դասարանեայ դպրոցներ չ'են մնացած, այլ ամենքն փակուած են, մենք չ'ենք հասկանում այդ նոր անպատեհ կարգադրութեան միտքն՝ թէ ի՞նչ է արդեօք ստիպել Մակարին փակել տալ այդ դասարաններն ։



*Գ. — Թիֆլիզի Հայ Հասարակութեան Ներկայացուցչաց հեռագիրն առ Տ. Մակար Սրբազան։*

Աստուածային Սուրբ Պատարագին ունկնդիր լինելուց յետոյ՝ Թիֆլիզի Հայ Հասարակութիւնն, Թեմական Առաջնորդի մօտ հաւաքուած, Ձերդ Վեհափառութեան մատուցանում է իւր ամենանկեղծ շնորհաւորութիւնն այսօրուան կրկնակի հանդիսակատարութեանց — Ս. Էջմիածնի Մայր Տաճարի տօնախմբութեան եւ Սուրբ Միւռոնի օրհնութեան առիթով։ Ապաւինելով առ Աստուած, մենք լիայոյս ենք, որ Ձերդ Վեհափառութեան ջանքերով կը բացուին մեր դպրոցների այսքան երկար ժամանակ փակ մնացած դռներն, որոց մէջ հայ մանկտին ըստ առաջնոյն կը կրթուի Ս. Եկեղեցւոյ հովանեաց տակ։ Թիֆլիզի Հայ Հասարակութիւնն նոր ի նորոյ գործ կը դնէ իւր բոլոր ջանքն, որպէս զի Ուսումնարանն նման այն ժամանակամիջոցին, երբ Թէմս կառավարում էր Ձերդ Սրբութիւնն, բարոյական եւ կըրթութեան բարիքն սերմանէ Հայ մանկանց սրտին մէջ անմիջական ղեկավարութեամբ արժանաւորագոյն Առաջնորդի Թեմիս։

Ստորագրութիւնք

Աղեքսանդր Մատինեան (Թիֆլիզի Քաղաքագլուխ)։
Իշխան Պետրոս Բեհբուդեան.
Աղեքսանդր Անանեան (Ատեն. Հայ Բարեգոր. Ընկ.
Ժեներալ իշխան Աղեքսանդր Արղութեան.
Լուսարար Մելիք-Բեգլարեան (Պետակ. խորհրդ.)

Իշխան Նապօլէօն Ամատունի (Կառավարիչ քաղաքային վարկի ընկերութեան).
Դաւիթ Ղօրղանեան (Հաշտարար Դատաւոր).
Բալաբէգ Մէլիք-Ղարագէօզեան (Նախկին Պատգ. Ղարաբաղի թեմին).
Միքայէլ Թամամշեան (Հոգաբ. Ներսիսեան Դպր.)
Իշխան Կոստանդին Բէհբուդեան (հրապարակախօս)
Գրիգոր Ճանբուղաղեան (Տնօրէն առեւտ. Բանկ.)
Բժշկապետ Միքայէլ Ճահպարոնեան (Նախկին Ատենապետ Հայոց Ուսուցչական Ժողովի)
Գէորգ Ծուրինեան (Պետ. Խորհրդ.):
Աղէքսանդր Մանթաշեան (Թիֆլիսի Ա. կարգի վաճառական եւ անդամ զանազ. ընկերութ.)
Յովհաննէս Ծովիանեան (Առաջին կարգի վաճառական եւ սեղանաւոր):
Ժեներալ Ստեփաննոս Քիշմիշեան.
Ինժիներ Աղէքսանդր Եսայեան (Անդամ Վարչութեան Տպագր. Ընկերութեան).
Աբգար Յովհաննիսեան (Խմբագիր Արձագանքի).
Ներսէս Աթաբէգեան (Նախկին Պատգամաւոր Ղարաբաղի Թեմին).
Բժշկապետ Բաբանասեան.
Յարութիւն Թամամշեան (Նախկին անդամ Քաղաքային Վարչութեան).
Աղէքսանդր Երեցեան (Հրապարակախօս).
Մանդինեան (Ուսուցիչ).
Յակոբ Մէլիքեան (Վաճառականաց աւագ):

*Դ. — Հրովարտակ Աղէքսանդր Ա. Կայսեր Ռուսիոյ.: Սոյն օրինակ Կայսերական շատ վաւերագրեր*

*կարելի է յառաջ բերել. բայց այս մին ևս բաւական է ցոյց տալու համար՝ թէ ի՞նչ կը յայտարարէր Աղէքսանդր Առաջին Հայ Ազգին համար և ի՞նչ կը տընօրինէ այսօր Աղէքսանդր Երրորդ նոյն Ազգին կրօնական և կրթական իրաւանց դէմ։*

Ողորմութեամբն Աստուծոյ

**Մեք Աղէքսանդր Առաջին, կայսր և ինքնակալ ամենայն Ռուսաց եւ այլն եւայլն։**

Մեր կայսերական ողորմութիւնն կը նուիրեմք մեր սիրելի եւ հաւատարիմ Հայոց Ազգին՝ ամեն կարգի եւ աստիճանի հպատակաց որք կը բնակին ի Վըրաստան։

Վրաստանի մեր գլխաւոր Հրամանատարէն հաղորդուած տեղեկութիւններէն ճշմարիտ հաճութեամբ տեսանք մեր սրտին հաճելի այն նոր ապացոյցն հաւատարիմ զգացմանց, զոր ամեն կարգի եւ աստիճանի Հայ հպատակք ի Վրաստան միշտ տածած են եւ կը տածեն առ Բարձր Հովանաւորութիւն Մեր, զոր միշտ ունեցած եմք Վրաստանի Հայոց բարւոյն եւ հոգատարութեան համար։ Հայք սոյն անյողդողդ հաւատարմութեան զգացմունքն ցուցած են բազմադիմի փորձերով եւ հաւատարմութեամբ, երբ թեթեւամտութիւնն ու անբարեմտութիւնն նըկրտած են վրդովել մեր ի Վրաստան հաստատած անդորրութիւնն։ Հայք խռովայոյզ պարագայից մէջ, միշտ եղած են հաստատ եւ անյողդողդ իրենց ջերմեռանդութեամբ առ Մեզ եւ առ Գահն Մեր, զոհելով իրենց ստացուածքն, իրենց ամեն միջոցներն

եւ մինչեւ իսկ իրենց կեանքն յօգուտ Մեր ծառայութեան եւ յօգուտ հասարակաց բարւոյն ։

Վրաստանի մէջ բնակող բոլոր Հայոց Ազգի, ամէն կարգի եւ աստիճանի հպատակացս այս սրտովին հաւատարմութիւնն, նոցա ծառայութիւնքն ու քաջութիւնքն քաղցր պարտք կը դնեն Մեր վրայ յայտնել բոլոր աշխարհի Մեր իրաւացի երախտագիտութիւնն ու բարի կամեցողութիւնն առ Ազգն Հայոց ։ Թո՛ղ պահպանուի ուրեմն սոյն երախտագիտական յայտարարութիւնն ու վկայութիւնն ի յիշողութեան ապագայ սերնդոց ։ Մնամք միշտ առ նոսա ամենեսին կայսերական ողորմութեամբ բարեհաճ ։

Տուեալ ի Տեպլից որ ի Բոհեմիա

15 Սեպտ. 1813, ԱԼԷՔՍԱՆԴՐ



# ՎՐԻՊԱԿՔ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 11 | 25 | Սկզբան | 'ի սկզբան |
| 28 | 2 | Ջատութեան | Ազատութեան |
| 30 | 3 | Ոյժ տուած է | Ոյժ տրուած է |
| 32 | 33 | Ամենան յինչ | Ամենայն ինչ |
| 36 | 10 | Զ'ա՞նհետեր | Զ'ա՞նհետիր |
| 58 | 13 | Ամենայնի | Ամենայնիւ |
| 68 | 10 | Յայտարարուքեան | Յայտարարութեան |